34րդ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ
ԴԱՒԹԵԱՆ ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹԵԱՆ

# ՆԱԽԱԿՐԹՈՒԹԵԱՆ ԱՄԲՈՂՋ ԴԱՍԸՆԹԱՑՔ

## ՀԱՄԱԿԵԴՐՈՆ ԴՐՈՒԹԵԱՄԲ

# ՆՈՐ ԴՊՐՈՑ

*Բարոյագիտութիւն, Քաղաք. Կրթութիւն, Պատմութիւն, Աշխարհագրութիւն, Թուաբանութիւն, Գիտութիւններ, Մայրենի լեզու*

ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ

## Տարրական Ընթացք

## Բ. ՊՐԱԿ

ԳԻՐՔ ԱՇԱԿԵՐՏԻՆ

معارف نظارت جلیله‌سنك ٤٥ نومرولی و فی ١٣ نیسان ٣١٦
تاریخلو رخصتنامه‌سیله طبع اولنمشدر

ՀՐԱՏԱՐԱԿԻՉ
ՍՄԲԱՏ ԴԱՒԹԵԱՆ
1901

# ԲԱՐՈՅԱԳԻՏՈՒԹԻՒՆ

## ԸՆՏԱՆԻՔԸ

1. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Պարտականութիւն դէպի ծնողք.
— Գրիգոր խելացի տղայ մըն է և աղէկ կ'աշխատի իր դասերուն. Իր բնաւորութիւնն ալ շատ աղէկ է, այնպէս որ ուսուցիչը կը զարմանայ անոր աշխատասիրութեանը վրայ։ Օր մը, ուսուցիչը ըսաւ Գրիգորին որ նամակով մը իմացընէ իրեն թէ ի՞նչ է պատճառը որ ինքն այնքան աշխատասէր է։ Գրիգոր հետեւեալ նամակը գրեց։

«Պարո՛ն ուսուցիչ. Շատ կը սիրեմ հայրս ու մայրս և կ'աշխատիմ որ անոնց սիրելի ըլլամ։ Իմ ծնողքս ամբողջ օրը ինծի համար կ'աշխատին և ամէն բան կ'ընեն որ ես աղէկ ապրիմ։ Ես ալ կ'ուզեմ իմ կողմէ աղէկութիւն ընել իմ սիրելի հօր և մօր։

«Գիտէ՞ք արդեօք թէ որչա՛փ կ'ուրախանան անոնք, երբ ես դպրոցէն տուն կը դառնամ ու կ'իմացընեմ թէ դասերուս մէջ աղէկ թիւեր առած եմ։ Հիմա՞ շիտակը զրուցե՞մ, ես այնքան կ'աշխատիմ որ ծնողքս միշտ ուրախ ըլլան իմ առաջդիմութեանս համար։ Անկէ զատ, հայրս ինծի ըսաւ թէ, երբ օր մը ինքը ծերանայ, ե՛ս ալ մեծ երիտասարդ ըլլամ, այն ատեն ե՛ս պիտի օգնեմ իրեն։ Ա՜հ, որչափ աղէկ է այն օրը, որ ա՛լ չթողում որ իմ ծերունի հայրս ու մայրս աշխատին, որ անոնք հանգիստ նստին և ես անոնց համար աշխատիմ։

«Պարո՛ն ուսուցիչ, ես Ձեզ ալ շատ կը սիրեմ, Դուք ինծի շատ բաներ կը սորվեցընէք, ես միտքս դրած եմ միշտ աշխատիլ որ դուք հաւնիք ինծի»։

1. Առած. — Բոլոր սրտով սիրեցէք ձեր ծնողքը։
2. Առած. — Տղա՛ք, հնազանդ եղէ՛ք ձեր հօր ու մօր։

---

2. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Պարտականութիւն եղբայրներու եւ քոյրերու մէջ. — Եթէ դուք ձեզմէ աւելի մեծ եղբայրներ ու քոյրեր ունիք, շատ սիրեցէք զանոնք. երբ պզտիկ ցաւ մ'ունենաք, իմացուցէք անոնց. երբ ուրախ ըլլաք, ըսէք անոնց։ Երբ դժուար սորվիք ձեր դասերը, անոնց հարցուցէք։ Մեծերը միշտ կը սիրեն իրենցմէ պզտիկները և անոնց կը սորվեցընեն։

Ես պզտիկ տղայ մը կը ճանչնամ որ իր ձեռքը ինկած տասնոցները կը պահէ և Նոր Տարիին նուէր մը կը գնէ իր մեծ քրոջը տալու համար։ Եթէ աւելի պզտիկ եղբայր ու քոյր ունիք, սիրեցէք զանոնք, գգուեցէք այդ պզտիկները, սորվեցուցէք անոնց գիր գրել, կարդալ, հաշուել։ Ի՛նչ սիրուն բան է պզտիկ տղային բան մը սորվեցընել։ Եթէ, Աստուած չընէ, դուք մայր չունենայիք, ո՞վ պիտի հոգար այդ պզտիկները։

Շատ մը մեծ եղբայրներ ու քոյրեր կան, որ երբ մայր չունին, իրենց պզտիկները մօր պէս ու հօր պէս կը խնամեն։

3. Առած. — Երբ եղբայր եղբօր օգնէ, երկուքն ալ երջանիկ կ'ըլլան,

---

3. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Պարտականութիւն դէպի մեծ հայրն ու մեծ մայրը. — Առտու մը փոքրիկ Ազնիւին հարցուցին թէ տանը մէջ ամենէն աւելի ո՞վ է որ

իր հետը կը խաղայ ու զինքը կ'ուրախացընէ. Ազնիւ, աղէկ մը մտածելէ ետքը, ըսաւ. — Մեծ հա՛յրս, ան է որ զիս կը դրկէ շատ անգամ, իր ծունգերուն վրայ կ'առնէ։ Երբ օդը աղէկ ըլլայ, ձեռքէս կը բռնէ, զիս պտտցընելու կը տանի. շատ անգամ սենեակին մէջ պզտիկ գնտակներով ինծի հետ կը խաղայ։ Գարնան ժամանակ սա կանանչ բարտի ծառերէն ճիւղեր կը կտրէ և ինծի համար պիպիչ (սուլիչ) կը շինէ։ Գիտնաք թէ ո՛րչափ կը սիրեմ մեծ հայրս, — եթէ ան չըլլայ, ես շատ կը նեղուիմ տանը մէջ։ Անցած օր ես խօսք տուի մեծհօրս, որ, երբ մեծնամ, իրեն պզտիկ էշ մը գնեմ որ վրան նստի ու այգին երթայ։

4. Առած. — Երջանիկ է այն մայրը որուն զաւկին մազերը իր աչքին առջեւ կը ճերմկնան։

5. Առած. — Մարդ շատ միջոցներով կրնայ նեղութիւն պատճառել ուրիշներուն եւ շատ միջոցներով ուրախութիւն։

---

4. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Պատուականութիւն դէպի սպասաւորները. — Յովսէփ ու իր քոյրը Սաթինիկ դեռ պզտիկ տղաքներ էին, երբ իրենց սպասուհին որուն անունը Սալվի էր, զիրենք շատ անգամ պտտցընելու կը տանէր, երբեմն ալ՝ երբ սպասուհին տանը մէջ շատ գործ ունենար՝ իրենց սպասաւոր Գէորգ զիրենք կը տանէր մօտակայ պարտէզները պտտցընելու։ Երբ Յովսէփ ու Սաթինիկ մեծցան ու մարդ եղան, անոնք չմոռցան իրենց սպասաւորն ու սպասուհին։ Հիմա, երբ կը հարցընէք իրենց, ձեզի պիտի պատմեն թէ պզտիկ եղած ատեններնին ո՛րչափ հոգ տարած են իրենց, ի՛նչպէս խնամած են զիրենք։ Քոյրն ու եղբայրը շատ երախտագէտ սիրտ ունին, անոնք մեծ բարիքներ ըրին իրենց սպասաւորին ու սպասուհիին։

Սաթինիկ կը սիրէր Սալվին, խեղճ կինը պզտիկ զաւակ մ'ունէր գիւղը, Սաթինիկ միշտ նուէրներ կը ղրկէր անոր. իսկ հիմա որ Սաթինիկ մեծցաւ ու կատարեալ աղջիկ եղաւ, ստիպեց Սալվին որ իր պզտիկ տղան հոս բերէ։ Հիմա սպասուհիին տղան դպրոց կ'երթայ և Սաթինիկ անոր հոգ կը տանի։

Իսկ Գէորգ արդէն կտրիճ երիտասարդ էր։ Յովսէփ, երբ մեծ մարդ եղաւ, չմոռցաւ զանի։ Գէորգին ամսականէն մաս մը դրաւ իր քովը պահեց։ Օր մ'ալ երբ Գէորգին հայրն ու մայրը իրենց գիւղէն նամակ գրեցին Յովսէփին և աղաչեցին որ իրենց զաւակը ղրկէ, Յովսէփ շատ ուրախ եղաւ։ Գէորգի ստակին վրայ իր կողմէ ալ ստակ դրաւ և անոր ըսաւ. «Գէորգ, հայրիկդ ու մայրիկդ քեզ կ'ուզեն, գնա՛ երկիրդ, թող անոնք ուրախ ըլլան, Աստուած քեզի հետ»։ Գէորգ շատ յուզուեցաւ, անոր աչքերն արցունքով լեցուեցան, պագաւ Յովսէփին ձեռքը եւ մեկնեցաւ իր հայրենիքը։

Յովսէփ այնքան ուրախ էր իր սպասաւորին բարիք ընելուն համար, որ մինչեւ այսօր ինքը կ'ըսէ թէ ես կեանքիս մէջ այնչափ երջանիկ եղած չէի, որքան այն օրը որ Գէորգը ճամբու դրի դէպի իր հայրենի տունը։

6. Առած. — Մեր ծառաներն ու սպասուհիները այլ մարդ են, սիրտ ու զգացում ունին. պէտք է անոնց հետ քաղցրութեամբ վարուինք եւ անոնց բարիք ընենք։

---

5. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Հաշտարար միտք. — Սիմոն ու Բերուզ իրարու ձեռքէ կը քաշքշէին պզտիկ պուպրիկ [պէպէք] մը զոր հօրաքոյրը տուած էր իրենց։ Ան կ'ըսէր թէ իմս է, միւսը կ'ըսէր իմս է։ Խեղճ

*պուպրիկին հագած շորերը արդէն սկսած էին պատռտիլ ու քոյր եղբայր բարձր ձայնով կը պոռպռային, իրարու դէմ կը բարկանային: Քիչ էր մնացեր՝ պուպրիկը կտոր կտոր ըլլար, երբ մեծ քոյրը Դպրոցէն տուն եկաւ ու ըսաւ. Մտիկ ըրէք, ձեզի բան մը պատմեմ, մեր վարժուհին այսօր շատ աղէկ պատմութիւն մ'ըրաւ: Ժամանակով երկու քոյր կան եղեր, ասոնք ունեցած են պուպրիկ մը. օր մը սկսած են իրարու ձեռքէ քաշել զանի, իրարմէ խլելու համար: Այն միջոցին դատաւոր մը ներս մտեր է և պուպրիկը անոնց ձեռքէն առնելով, զմելիով երկու կտոր ըրեր, ու մէկ կտորը մէկին, մէկալը միւսին տուեր է. որ իրարու հետ չկռուին:*

*— Ա՜հ, խեղճ պուպրիկ, ըսին եղբայր ու քոյր:*

*Այն ատեն Վարդուհին ըսաւ. — Դուք ալ հիմա այն երկու քոյրերուն պէս էք, պուպրիկին համար կռիւ կ'ընէք, տուէ՛ք պուպրիկը՝ երկու կտոր ընեմ, կէսը քեզի, ...:*

*— Չէ՛, չէ՛, ըսին պզտիկները, չէ՛, մենք չենք ուզեր, մե՛ղք է պուպրիկը: Շատ լաւ, ըսաւ այն ատեն Վարդուհի, ուրեմն պուպրիկը հոս սեղանին վրայ դնենք, թող անիկա քեզի՛ ալ ըլլայ, անոր ալ:*

*— Այո՛, այո՛ այդպէս աղէկ է, ըսին երկու պզտիկները և հաշտուեցան:*

7. Առած. — *Մարդ միայն իրեն համար ապրելու չէ:*

8. Առած. — *Պզտիկ տղաք իրարու թող օգնեն:*

---

6. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Օգտակար ըլլալու փափագ.

*— Արղութեանց տունը օր մը լուացք կար: Արղութի մայրն այնքան զբաղած էր որ աչք բանալու ժամանակ չունէր: Որովհետեւ արձակուրդի օրեր էին, Ար-*

*ղութ դպրոց չէր գացած։ Հիմա Արղութ կը մտածէ թէ ի՛նչպէս օգնէ իր մօրը։ Կէս օրուան ճաշի ժամանակը կը մօտենար, Արղութ անձայն անշշուկ սեղան պատրաստեց, պնակները դրաւ ու պարտէզ իջնելով ծաղիկներէ փունջ մ'ալ շինեց ու գաւաթ մը ջրի մէջ՝ սեղանին վրայ դրաւ։ Մայրը որ շատ ժամանակ չունէր, ներս մտաւ սեղանը պատրաստելու համար... և ո՜րչափ զարմացաւ երբ տեսաւ որ սեղանը շտկուած է և Արղութ անկիւն մը կեցած՝ իր երեսը կը նայի անուշ ժպիտով մը։*

*Մայրը շատ ուրախ եղաւ, իսկ պզտիկ աղջիկը ա՛լ աւելի ուրախ եղաւ որ կրցած էր իր մօրը օգտակար ըլլալ։*

9. Առած. — *Մարդ միշտ երջանիկ է երբ օգտակար կ'ըլլայ։*

---

7. ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ. — Ընտանիքի ուրախութիւն. — *Տեսա՞ծ էք թռչունի բոյն մը ուր դեղնագոյն կտուցով ձագուկներ ճի՜ւ ճի՜ւ կ'ընեն՝ սպասելով որ իրենց մայրը ուտելիք բերէ իրենց։ Հիմա, երեւակայեցէ՛ք որ այդ ձագուկներէն մէկը բոյնէն վար իյնայ և քարերու ներքեւ մնայ՝ միս մինակ։ Ի՞նչ կ'ըլլայ խեղճ ձագուկին վիճակը։ Պիտի ճըվճըվայ, ճըվճըվայ ու անօգնական մեռնի։ Դուք ո՜րչափ երջանիկ էք որ հայր ու մայր ունիք, տան մէջ կ'ապրիք, եղբայրներ՝ քոյրեր և ազգականներ ունիք։ Ես պզտիկ տղայ մը կը ճանչնամ, որուն հայրն ու մայրը մեռած էին, մնացած էր որբ։ Տեսնէիք ի՜նչ խեղճութեան մէջ էր։ Հագուստները պատռտուած՝ դէմքը, մազերը աղտոտ, նիհար. գիշերները փողոցը կը մնար։ Խե՜ղճ որբ։ Բարեկամ մ'ունէի որ զաւակ չունէր, աղաչեցի անոր որ*

*այդ որբը իր քովը առնէ ։ Բարեկամս, որ շատ բարի սիրտ ունէր, լսեց իմ խօսքս, որբը առաւ իր տունը, պաշտպանեց զայն ։ Հիմա որչա՜փ երջանիկ է խեղճ տղան ։ Հոն, տանը մէջ, ձմեռ ատեն սենեակը տաք է ։ Աղէկ հագուստներ կը հագնի, աղէկ կերակուր կ'ուտէ ։ Զինքը կը լուան, կը մաքրեն, հիւանդ ըլլա՞յ իրեն հոգ կը տանին ։*

*Ի՞նչ աղէկ բան է տունը ։ Հոն մարդ իր եղբայրներուն ու քոյրերուն հետ կը խաղայ ։ Մեծ հայրն ու մայրը զինք կը սիրեն, իր մայրն ու հայրը իրեն ինչ որ պէտք է, կ'առնեն և զինքը դպրոց կը ղրկեն ։ Տունը, տանը սենեակները, պզտիկ պարտէզը, ամէնքն ալ շատ սիրուն են ։ Տանը ուրախութիւնը ամէն տեղէն աղէկ է ։ Գացէ՛ք բարեկամի մը տունը, մնացէք հոն մէկ երկու օր, պիտի տեսնէք՝ ձեր սիրտը կը նեղուի, շուտով կ'ուզէք ձեր տունը դառնալ ։*

10. — Առած. — *Ամեն առաքինութիւն ընտանիքեն կը բղխի ։*

11. Առած. — *Տղան ամեն տարիքի մէջ պէտք է յարգէ ու մեծարէ իր ծնողքը ։*

---

8. **ԽՕՍԱԿՑՈՒԹԻՒՆ.** — **Ընտանեկան կեանքի բարոյացուցիչ ազդեցութիւնը.** — *Օր մը քանի մը հոգի մէկտեղ ժողվուած՝ կը խօսակցէին ու շատ կը գովէին մարդ մը, որուն համար կ'ըսէին թէ շատ բարի է, շատ քաջասիրտ և շատ ալ պարկեշտ է ։ Այդ մարդը նոյն միջոցին հոն եկաւ, կանչեցին զինքը և խնդրեցին որ իրենց ըսէ թէ ի՞նչպէս ինքը այնքան լաւ կրթուած է ։ Մարդը պատասխանեց. « Ես շատ արժանաւոր մէկը չեմ, դուք պէտք չէ որ այնքան զիս գովէք, այլ գովեցէք Ընտանեկան կեանքը ։ Ես տանը*

մէջ մեծցած եմ՝ հօրս մօրս աչքին առջեւ։ Անոնք շատ բարի ու աշխատասէր էին, միշտ աղէկ օրինակ կու տային ինծի։ Ես օր մը չլսեցի անոնց բերնէն վատ խօսք մը, չլսեցի որ ուրիշները բամբասէին, ուրիշներուն գէշ ըսէին։ Ինծի ալ միշտ այնպիսի գիրքեր կու տային կարդալու, որ ես բարի ու պարկեշտ մարդերու պատմութիւն կը կարդայի անոնց մէջ։

«Ես շատ կը ցաւիմ անոնց վրայ որ տան մը մէջ չեն ապրիր։ Ընտանիքի մէջ մարդ աղէկ բաներ կը տեսնէ և աղէկ բաներ կը սորվի, ինքն ալ բարի ու պարկեշտ կ'ըլլայ։ Ես մարդեր կը ճանչնամ որ տուն տեղ չունին. Թափառական ու չար մարդիկ են»։

## ԱՄՓՈՓՈՒՄ ԵՐԿՐՈՐԴ ԱՄՍՈՒԱՆ

Պէտք է սիրենք ու յարգենք մեր հայրն ու մայրը որ այնքան կը գուրգուրան մեր վրայ, կը խնամեն զմեզ։ Մենք պէտք է աշխատինք մեր քոյրերուն ու եղբայրներուն հաճելի ըլլալ, անոնց սիրտը ուրախացընել։ Հապա որչա՜փ պարտաւոր ենք մեր մեծ հայրն ու մայրը պատուել, մեծարել, որովհետեւ անոնք այնքան բարի են ու կը սիրեն զմեզ։ Մեր տան սպասաւորներուն համար պէտք է շատ բարի ըլլանք։ Պէտք չէ բնաւ իրարու հետ վիճաբանիլ. աղէկ է որ միշտ անուշ վարուինք մէկմէկու հետ։ Պէտք է աշխատինք օգտակար ըլլալ, որչափ կարողութիւն ունինք։ Շատ սիրելու ենք մեր ընտանիքը, եւ աղէկ բաներ սորվելու ենք ընտանիքի ծոցին մէջ։



# ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ԿՐԹՈՒԹԻՒՆ

## ԹԱՂ ՈՒ ԺՈՂՈՎՈՒՐԴ

1. **ԴԱՍ. Ժողովուրդը.** — 1. *Ներսէս կիրակի առտու մը հօրը հետ եկեղեցի գնաց, զարմանքով տեսաւ որ հոն, եկեղեցիին բակը, ուրիշ կիրակիներէ աւելի բազմութիւն կար։ Ամէնքն ալ աղօթք ընելէ ետքը, մէկիկ մէկիկ կուգային բանկային առջեւ, ուր դրուած էր տուփ մը՝ կնքուած, և վերի կողմէն ծակ մը միայն ունէր. անոր մէջ կը ձգէին մէյմէկ թղթի կտոր։ Տուփին վրայ գրուած էր* Քուէտուփ։ *Հոն կար տետրակ մը ուր ամէնքն ալ կը գրէին իրենց անունը։ Քիչ մը ետք, Թաղին Քարոզիչ Վարդապետը և ժողովուրդը դպրոցին սրահը ելան, հոն բերին նաեւ քուէտուփը, և Քարոզիչը ամէնուն առջեւ բացաւ այդ տուփը և երկու հոգի անոր մէջէն թղթերը (*քըւէ*) մէկիկ մէկիկ հանելով՝ բարձրաձայն կը կարդային, և ուրիշ երկու հոգի ալ կարդացուած անունները կը գրէին մեծ թղթերու վրայ։*

2. *Ներսէս, որ հազիւ 12 տարեկան կար, բան չհասկցաւ այս եղածներէն, և հետաքրքրութեամբ հարցուց հօրը թէ ի՞նչ կ'ընէին այն տեղ։*

*Եւ հայրը բացատրեց թէ Թաղին եկեղեցիին ու դպրոցին գործերը վարելու համար 7 անձ կ'ընտրեն քուէարկութեամբ որուն կը հսկէ Թաղին Քարոզիչը կամ Աւագերէցը։ Աւագերէցը Պատրիարքարան կը գրէ ընտրուած 7 հոգիին անունը և Պատրիարքը կոնդակով կը հաստատէ Թաղ. Խորհուրդը։*

*Աս ընտրուածները պարկեշտ ու խելացի մարդիկ*

ըլլալու են, որ եկեղեցիին, դպրոցներուն ու աղքատներուն հոգ տանին՝ ամէն կիրակի հաւաքուելով եկեղեցիին խուցը։

1. Ո՞ւր գնաց Ներսէս։ Ի՞նչ տեսաւ եկեղեցիին բակը։ 2. Ի՞նչ է քուէտուփը։ Ի՞նչպէս կատարեցին քուէարկութիւնը։ Ո՞վ կը վաւերացընէ ընտրութիւնը։ Ի՞նչ է ընտրող։ Իսկ ընտրելի՞։ Ի՞նչ է Թաղական խորհրդին պաշտօնը։

---

**2. ԴԱՍ. Թաղային գործեր, Դպրոց.** — 1. *Ընտանիք մը կար որ չքաւորութեան մատնուած էր և չէր կրնար աշխատիլ. պզտիկները խեղճ էին և ձմեռը վրայ հասնելով՝ նոյն իսկ վառելիք չունէին։ Իրենց տանէրէցը գնաց Թաղական Խորհրդարան և բացատրեց անոնց վիճակը։ Թաղ. Խորհուրդը, որ Ծնունդէն առաջ ժողովուրդէն դրամ հաւաքած էր, քահանային ստակ տուաւ, քահանան տարաւ զայն աղքատ ընտանիքին որ ատ ստակով հոգաց իր պէտքերը։*

*Փայտ ու ածուխ առաւ, և քիչ մը կերպաս գնեց՝ տղոց վրան գլուխը նորոգելու համար։ Շաբթէ շաբաթ այսպէս քիչ մը դրամ կը վճարէին այդ աղքատ ընտանիքին, մինչև որ անոնց հայրը առողջացաւ, սկսաւ գործի երթալ, և իրեններուն ապրուստը ճարել։*

2. *Խորէն 7 տարեկան եղաւ։ Դպրոց երթալու ատենն էր։ Հայրը տարաւ զայն եկեղեցիին խորհրդարանը, անունը արձանագրել տուաւ, տոմսակ մը առաւ և միւս օրը տղան տարաւ դպրոց, և տոմսակը յանձնեց Տնօրէնին որ Խորէնը ղրկեց առաջին դասարանը։ Հոն շատ մը տղաք կային։ Խորէն շատ ուրախացաւ՝ հոն տեսնելով իրեն տարեկից տղաքներ։ Վարժապետը անոր տուաւ Քերական մը, քարէ տախտակ, գրիչ, և Խորէն սկսաւ այբուբենը սորվիլ։*

*Հայրը ամէն ամիս 10 ղրուշ կուտար Խորէնին,*

ան ալ կը տանէր դպրոցի Տնօրէնին, որ Ընկալագիր մը կուտար՝ սապէս.

Ստացայ 10 դրշ. Սեպտեմբեր ամսաթոշակը Ա. Վարժարանի աշակերտ Խորէն Միհրայէլեանի։

1 Սեպտ. 1900 Տնօրէն Ա. Վարժարանի
[Ստորագրութիւն]

3. Խորէն ընկեր մը ունէր որ աղքատ ծնողքի զաւակ էր և ճաշի ատեն միայն ցամաք հաց կ'ուտէր։ Այս բանը Խորէն պատմեց իր մօրը։ Ան ալ Խորէնի ծրարին մէջ քիչ մը աւելի կերակուր դրաւ, պատուիրելով որ նոյն աղքատ տղին հետ ճաշէ ամէն ցորեկ։

Աղքատ տղան հիմա կրնար տաք կերակուր ուտել, սնունդ առնել. շա՜տ ուրախ էր։

Բայց Խորէն անկէ աւելի ուրախ էր որ պզտիկ հասակէն ուրիշին աղէկութիւն կ'ընէր, ընկերսիրութեան կը վարժուէր։ Ու երկուքը միասին կը խաղային, միասին կ'երթային դպրոց ու միասին կ'աշխատէին իրենց դասերուն։

1. Աղքատ ընտանիքին վիճակն ո՞ւր հասեր էր։ Ինչո՞ւ։ Քահանան ի՞նչ ըրաւ։ Մինչեւ ե՞րբ նպաստ ղրկեց աղքատ ընտանիքին։ — 2. Խորէն քանի՞ տարեկան էր երբ դպրոց գնաց։ Հայրը նախ ո՞ւր տարաւ զայն. ինչո՞ւ։ Տոմսակը որո՞ւ տարին. Խորէն ի՞նչպէս ընդունուեցաւ դպրոց։ Ի՞նչ կ'ընէր հոն։ Ամսեգլխուն ի՞նչ կուտար հայրը։ Այդ դրամը որո՞ւ կը վճարէր Խորէն։ — 3. Պատմեցէք Խորէնին բարեսրտութիւնը։

---

3. ԴԱՍ. Երախայի մը մկրտութիւնը. Թէզքէրէի Օսմանիէ կամ Նուֆուս Թէզքէրէ. — 1. Անցած շաբթու, հօրեղբօրս զաւակ մը ծնաւ, աղուոր մանչ մը։ Աս կիրակի կնքահայրը եկաւ, դայեկը խանձարուրներու մէջ փաթթեց մանկիկը, և ժամկոչը դիրկն առ–

աւ զայն ու տարաւ եկեղեցի։ Կիներ ու բարեկամներ խմբովին հետը գացին։ Ես ալ գացի։

2. Մանուկը մերկացուցին, կնքահօր գիրկը առին և քահանան աւազանին մէջ մխրճեց՝ ըսելով։ «Յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ»։ Յետոյ կնքահօրը հարցուց երեք անգամ. «Երախայ զի՞նչ խնդրէ»։ Կնքահայրը երեք անգամ ալ պատասխանեց «Հաւատք, յոյս, սէր և մկրտութիւն»։ Մանուկին ճակատը, աչքը, ականջը, ձեռքը եւն մեռոնով դրոշմեցին։ Մանուկին անունը դրին Շնորհք, մինչդեռ ինք կը ճչէր, կուլար՝ անհանգիստ ըլլալով այս շարժումներէն։

3. Թաղական խորհուրդին գրագիրը բերաւ մեծ տետրակ մը որուն վրայ գրուած է Արձանագրութիւն ծնունդներու։ Այս տետրակին մէջ գրեց նորածինին անունը, ծնած թուականը, հօրն ու մօրը անունը, կնքահօրն ու մկրտող քահանային անունը։ Այս տետրակին մէջ երկու տեղ գրեցին այս անուններն ու թըւականը։ Կէսը կտրեցին տուին հօրեղբօրս, և միւս կէսն ալ թաղին խորհրդարանը պահեցին։

4. Այս արձանագրութեան համեմատ, թաղին մխտար կը տեղեկագրէ Մարդահամարի Վարչութեան, որ նոյնպէս արձանագրելով մանուկին ծնունդը՝ կու տայ անոր Օսմանեան թէզքէրէն, որով կը հաստատուի անոր Օսմանեան հպատակութիւնը։

5. Այդ թէզքէրէն կարեւոր է մանկան ամէն մէկ տարիքին և կեանքի այլ և այլ պարագաներուն [ամուսնութիւն, ճամբորդութիւն, մահ, առուտուր, եւն]։

1. Նորածին երախան մկրտելու համար ո՞ւր կը տանին։ Հետը որո՞նք կ'երթան։ — 2. Ի՞նչ կ'ընեն մկրտութեան պա-

*հուն. ի՞նչ է մեռոնը. — 3. Նորածինին անունը ո՞ւր կ'արձանագրեն։ Արձանագրութեան թուղթը քանի՞ մաս կը բաղկանայ. — 4. Մխիթարը ի՞նչ կ'ընէ. ինչո՞ւ համար. — 5. Ի՞նչ բաներու մէջ պէտք է Օսմանիյէ թէզքէրէսին։*

---

**4. ԴԱՍ. Թաղեցիի պարտքեր**, — 1. *Սիրելի տղաքս, երբ 21 տարեկան ըլլաք, դուք ալ չափահաս մարդ պիտի սեպուիք և իրաւունքներ վայելէք։*

2. *Պիտի կրնաք գործի մարդ ըլլալ, առուտուր ընել։ Ձեր խօսքն ու ստորագրութիւնը պիտի յարգուին։* Ստացուածք *պիտի ունենաք զոր ձեր ուզած կերպով պիտի գործածէք ու շահագործէք, պիտի կրնաք ժողովներու մէջ* ձայն *և* քուէ *ունենալ. ժառանգութեան տէր ըլլալ, կտակ ու նուէր ընել, եւն։*

3. *Նոյնպէս պարտականութիւններ պիտի ունենաք,* տուրք *պիտի վճարէք, ձեր թաղին եկեղեցիին ու դպրոցին* իւղագին *և նպաստ պիտի տաք, պիտի ամուսնանաք, տուն ու ընտանիք պիտի կազմէք, աղքատներուն, հիւանդ թաղեցիներուն պիտի օգնէք և իբր թաղեցի, դպրոցին ու եկեղեցիին մատակարարութեան պիտի մասնակցիք։ Պէտք է որ սորվիք պետութեան օրէնքը՝ և անոր հպատակիք, ձեր կեանքն ու գործերը վարէք այդ բարերար օրէնքներուն համեմատ որոնք կը պաշտպանեն ձեր* կեանքն *ու* ինչքը*։*

4. *Անհատները կը կազմեն* ընտանիք*, ընտանիքները կը կազմեն* համայնք*, համայնքները կը կազմեն* ժողովուրդը*։*

5. *Ամէն անհատ* հպատակ *է Օսմանեան Պետութեան, որուն տէրն է Վեհ. Սուլթանը, որ իբրեւ հայր կը սիրէ և կը հոգայ իր ժողովուրդները։*

6. *Կառավարութիւնը կը կազմուի պետութեան գործերը վարող պաշտօնատարներէ։*

*1. Ե՞րբ չափահաս պիտի ըլլաք. — 2. Ան ատեն ի՞նչ իրաւունքներ պիտի ունենաք. — 3. Ի՞նչ պարտականութիւններ պիտի ունենաք։ — 4. Ժողովուրդը ինչերէ՞ կը կազմուի. — 5. Ի՞նչ ըսել է հպատակ։ — 6. Ի՞նչ է կառավարութիւնը.*

# ՀԱՅ-ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## 1. ԴԱՍ. — ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՎԱՌԸ

**1. Վարդավառ հին տօն մ'է.** —*Վարդավառը չորս հազար տարուան տօն է զոր հին Հայերը խմբովին կը տօնէին.* —Անահիտ *աստուածուհիին բագինը* վարդերով *կը զարդարէին, որուն համար կոչուած է «Վարդավառ», Այս տօնը կը կատարուէր Ամանորին։ Յետոյ Ս. Գրիգոր Լուսաւորիչ որոշեց կատարել Քրիստոսի Այլակերպութեան կամ Պայծառակերպութեան տօնը, որուն հետ նաև Վարդավառի տօնը։*

*Վարդավառի շարականն է «Որ ի լերին այլակերպեալ» իր սարօքը։ Պատարագի ճաշու շարականն է «Ուրախացի՛ր, պսակ կուսից» որուն մէջ կը գովաբանուի Ս. Կոյսն իր Յիսուս որդիին սքանչելիքներուն համար. Վարդավառի առջի օրուան իրիկունը կը կարդացուի սքանչելի աղօթք մը զոր գրած է Ս. Եղիշէ պատմագիրը։*

*Վարդավառին աղաւնի թռցնելու հին սովորութիւնը դեռ շատ տեղ կայ։ Այս բանը կ'ընէին նախնի Հայերը՝ մեհեաններու մէջ։ Դեռ քրիստոնեայ չեղած՝ կռապաշտ էին անոնք եւ ջուրը, քարը, կրակը, հովը եւայլն՝ իբրեւ աստուած կը պաշտէին։ Իրենց սիրական աստուածուհին էր Անահիտ որ կը համարուէր «Մայր ամենայն զգաստութեանց»։*

**Հարցարան.** — Ո՞րչափ հին է Վարդավառը. — Ինչո՞ւ Վարդավառ կոչուած է։ —Վարդավառն ե՞րբ կը կատարուէր.

հուն։ Ի՞նչ է մեռոնը։ — 3. Նորածինին անունը ո՞ւր կ'արձանագրեն։ Արձանագրութեան թուղթը քանի՞ մասէ կը բաղկանայ։ — 4. Մխթարը ի՞նչ կ'ընէ։ ինչո՞ւ համար։ — 5. Ի՞նչ բաներու մէջ պէտք է Օսմանիյէ թէզքէրէսին։

---

4. ԴԱՍ. Թաղեցիի պարտքեր. — 1. *Սիրելի տղաքս, երբ 21 տարեկան ըլլաք, դուք ալ չափահաս մարդ պիտի սեպուիք և իրաւունքներ վայելէք։*

2. *Պիտի կրնաք գործի մարդ ըլլալ, առուտուր ընել։ Ձեր խօսքն ու ստորագրութիւնը պիտի յարգուին։* Ստացուածք *պիտի ունենաք զոր ձեր ուզած կերպով պիտի գործածէք ու շահագործէք, պիտի կրնաք ժողովներու մէջ* ձայն *և* քուէ *ունենալ. ժառանգութեան տէր ըլլալ, կտակ ու նուէր ընել, ևլն։*

3. *Նոյնպէս պարտականութիւններ պիտի ունենաք,* տուրք *պիտի վճարէք, ձեր թաղին եկեղեցիին ու դպրոցին* բիւտճէին *և նպաստ պիտի տաք, պիտի ամուսնանաք, տուն ու ընտանիք պիտի կազմէք, աղքատներուն, հիւանդ թաղեցիներուն պիտի օգնէք և իբր թաղեցի, դպրոցին ու եկեղեցիին մատակարարութեան պիտի մասնակցիք։ Պէտք է որ սորվիք պետութեան օրէնքը՝ և անոր հպատակիք, ձեր կեանքն ու գործերը վարէք այդ բարերար օրէնքներուն համեմատ որոնք կը պաշտպանեն ձեր* կեանքն *ու* ինչքը։

4. *Անհատները կը կազմեն* ընտանիք, *ընտանիքները կը կազմեն* համայնք, *համայնքները կը կազմեն* ժողովուրդը։

5. *Ամէն անհատ* հպատակ *է Օսմանեան Պետութեան, որուն տէրն է Վեհ. Սուլթանը, որ իբրև հայր կը սիրէ և կը հոգայ իր ժողովուրդները։*

6. *Կառավարութիւնը կը կազմուի պետութեան գործերը վարող պաշտօնատարներէ։*

1. Ե՞րբ չափահաս պիտի ըլլաք։ — 2. Ան ատեն ի՞նչ իրաւունքներ պիտի ունենաք։ — 3. Ի՞նչ պարտականութիւններ պիտի ունենաք։ — 4. Ժողովուրդը ինչերէ՞ կը կազմուի։ — 5. Ի՞նչ ըսել է հպատակ։ — 6. Ի՞նչ է կառավարութիւնը։

# ՀԱՅ-ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## 1. ԴԱՍ. — ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՎԱՌԸ

**1. Վարդավառ հին տօն մ'է.** —Վարդավառը չորս հազար տարուան տօն է զոր հին Հայերը խմբովին կը տօնէին.—Անահիտ աստուածուհիին բագինը վարդերով կը զարդարէին, որուն համար կոչուած է «Վարդավառ», Այս տօնը կը կատարուէր Ամանորին։ Յետոյ Ս. Գրիգոր Լուսաւորիչ որոշեց կատարել Քրիստոսի Այլակերպութեան կամ Պայծառակերպութեան տօնը, որուն հետ նաև Վարդավառի տօնը։

Վարդավառի շարականն է «Որ ի լերին այլակերպեալ» իր սարօքը։ Պատարագի ճաշու շարականն է «Ուրախացի՛ր, պսակ կուսից» որուն մէջ կը գովաբանուի Ս. Կոյսն իր Յիսուս որդիին սքանչելիքներուն համար. Վարդավառի առջի օրուան իրիկունը կը կարդացուի սքանչելի աղօթք մը զոր գրած է Ս. Եղիշէ պատմագիրը։

Վարդավառին աղաւնի թռցնելու հին սովորութիւնը դեռ շատ տեղ կայ։ Այս բանը կ'ընէին նախնի հայերը՝ մեհեաններու մէջ։ Դեռ քրիստոնեայ չեղած՝ կռապաշտ էին անոնք եւ ջուրը, քարը, կրակը, հովը եւայլն՝ իբրեւ աստուած կը պաշտէին։ Իրենց սիրական աստուածուհին էր Անահիտ որ կը համարուէր «Մայր ամենայն զգաստութեանց»։

**Հարցարան.** — Ո՞րչափ հին է վարդավառը. — Ինչո՞ւ վարդավառ կոչուած է։ —Վարդավառն ե՞րբ կը կատարուէր.

— Աս տօնն ե՞րբ Այլակերպութեան փոխուեցաւ. — Հին հայերը այս տօնին ի՞նչ կ'ընէին։ — Վարդավառի շարականները որո՞նք են. — Վարդավառի առջի իրիկուն ի՞նչ կը կարդացուի։ — Աս աղօթքը ո՞վ գրած է. — Հին հայերը դեռ քրիստոնեայ չեղած ի՞նչ կը պաշտէին. — Ո՞վ էր Անահիտ։



## 2. ԴԱՍ — ՎԵՐՋԻՆ ՇԱԲԱԹ

2. **Յիսուս կը խաչուի ու կը թաղուի.** — *Ուրբաթ առտու, Կայիափա քահանայապետն ու բոլոր ատեանը Յիսուսը տարին Հրէաստանի դատաւոր [կուսակալ] Պոնտացի [Հռոմայեցի] Պիղատոսին առջեւ։*



*Սուտ վկայութիւններով ու աղաղակներով գրգռեցին մինչեւ որ Պիղատոս ստիպուեցաւ մահուան դատապարտել Յիսուսը։ Այն ատեն զինուորները հաւաքուեցան, ծիրանի հագցուցին անոր ու գլուխը*

*փշէ պսակ բոլորելով՝ չարաչար ծեծեցին. այս բոլոր հաւաքուած թշնամիները Յիսուսը տարին Գողգոթա ըսուած լեռը եւ հոն խաչի վրայ գամեցին։*

*Յիսուս խաչին վրայէն կ'աղօթէր երկնաւոր Հօր՝ ըսելով. « Հա՛յր, ներէ՛ այս մարդոց, վասն զի չեն գիտեր թէ ի՛նչ կ'ընեն։ »*




*Ժամը երեքն էր, երբ խաչեցին Յիսուսը։ Ժամը վեցին արեգակը խաւարեցաւ եւ բոլոր աշխարհ մըթնեց մինչեւ ժամը ինը։ Յիսուս ըսաւ, « Հա՛յր, հոգիս ձեռքդ կ'աւանդեմ »։ Եւ ահա տաճարին վարագոյրը վերէն վար պատռեցաւ, մեծ գետնաշարժ եղաւ եւ բազմաթիւ սուրբերու գերեզմաններ բացուեցան, շատ մեռելներ յարութիւն առին ու Յիսուսի*

*յարութենէն ետքը չատերուն երեւցան ։*

*Պահապաններ ու հեթանոս հարիւրապետն այս սքանչելիքը տեսնելով՝ աղաղակեցին, « Իրա՛ւ, ասիկա Աստուծոյ որդի էր »։ Արեմաթացի Յովսէփ անունով բարեպաշտ իշխանը գնաց Պիղատոսէն խնդրեց Յիսուսի մարմինը զոր պարտէզի մը մէջ թաղեց ։*

*Այս Շաբաթ իրիկունը խթում է, Ս. Զատկի ճրագալոյց է. Պատարագ կը մատուցուի ։*

**Հարցումներ**. — Ուրբաթ առտու Յիսուս ո՞ւր տարին.— Պիղատոս ի՞նչ ընել ստիպուեցաւ. — Յիսուս խաչին վրայէն ի՞նչ աղօթեց. — ժամը քանիի՞ն խաչեցին, ի՞նչ պատահեցաւ ։ — Ո՞վ թաղեց Քրիստոսը եւ ո՞ւր.

---

## Յ. ԴԱՍ. — ՅԻՍՈՒՍԻ ՅԱՐՈՒԹԻՒՆԸ. — ԶԱՏԻԿ

**« Քրիստոս յարեաւ »**. — *Ուրբաթ իրիկուն Յովսէփ Յիսուսը թաղեց. բարեպաշտ կիներ որ ազգական էին Տիրամօր, ու Յիսուսի թաղման ներկայ գտնուած էին, տեսան գերեզմանին տեղը ։*

*Գերեզմանին մօտ գալով՝ տեսան որ քարը վերցուած էր վրայէն եւ լուսաւոր հրեշտակ մը նստած էր քարին վրայ ։ Հրեշտակն ըսաւ. « Մի՛ վախնաք, դուք Յիսուսը կը փնտռէք, սակայն հոս չէ, յարութիւն առաւ »։ Կնիկները գացին ու աշակերտներուն պատմեցին Յիսուսի Յարութիւնը ։*

**Զատիկ**. — *Ընդհանուր քրիստոնեաներուն Զատիկը Քրիստոսի յարութիւն առած միաշաբաթ օրն [առտուն] է, զոր յետոյ առաքեալները Կիրակի անունով նուիրագործեցին, և փոխանակ հրէական շաբաթ*

*օրուան, որոշեցին այն օրը սուրբ պահել ի պատիւ և ի յիշատակ Քրիստոսի յարութեան ։*

*Հայ Եկեղեցին Զատկի տօնը մեծ հանդէսով կը կատարէ. — Յիսուսի Չարչարանքներուն, Խաչելութեան,*



*Թաղման ու Յարութեան բոլոր Աւետարանները կը կարդացուին ։ Մեր երանաշնորհ Հայրապետները այս տօնին յատուկ սքանչելի շարականներ գրած են ։*

**Հարցումներ.** — Յիսուս ե՞րբ թաղուեցաւ ։ — Ո՞վ ներկայ էր թաղման. — Ի՞նչպէս էր գերեզմանը։ — Ի՞նչ ըսաւ հրեշտակը. — Ի՞նչ ըրին կիները. — Ի՞նչ է Զատիկը. — Հայերը ի՞նչպէս կը տօնեն Զատիկը։

---

## 4. ԴԱՍ. — ԾԱՂԿԱԶԱՐԴ

**Ծաղկազարդ.** — *Զատկէն ութ օր առաջ, եկեղեցին կը տօնէ Յիսուսի Երիքովէն Երուսաղէմ մտնելը, չարչարուիլն ու խաչուիլը ։ Յիսուս երբ կը մօտենայ Բեթփագէ ու Բեթանիա գիւղերուն, իր աշակերտներէն երկուքը կը ղրկէ ուղղակի երթան բերեն կապ-*

ուած աւանակ մը՝ ըսելով թէ « Տէրը անոր պէտք ունի »։

Աշակերտները Յիսուսի հրամանը կը կատարեն, հանդերձներ կը դնեն գրաստին վրայ եւ կը հեծցը-



նեն Յիսուսը։ Ժողովուրդը ցնծութեամբ՝ ոմանք իրենց հանդերձները, ուրիշներ ծառերէ ոստեր կտրելով՝ ճամբուն վրայ կը սփռէին « Ովսաննա » աղաղակելով։

Եկեղեցիները կը զարդարուին արմաւենիի ու ձիթենիի ճիւղերով ու ծաղիկներով, ասոր համար այս տօնը կը կոչուի Ծաղկազարդ։ Այս տօնին կ'երգուին « Որ վերօրհնիս յաթոռս ». « Թագաւոր գոլով » « Ուրախ լեր, Սուրբ եկեղեցի » շարականները։

**Դռնբացէք**. — *Ծաղկազարդի իրիկունը՝ կը կատարենք Դռնբացէքի արարողութիւնը որ՝ միայն Հայ եկեղեցիին յատուկ է։ «Դռնբացէք»ը օրինակ է Քրիստոսի միւսանգամ գալուստին ու դատաստանին։ Արարողութեան ատեն, Աւագ Խորանի վարագոյրը ծածկուած է. Հին ատեն, ժողովուրդը գաւիթը կը կենար ու հոն կ'աղօթէր, եւ երբ «Զողորմութեան քո զդուռն բաց մեզ, Տէ'ր» շարականը կը սկսուէր, այն ատեն ժողովուրդը եկեղեցի կը մտնէր։ Հիմա Աւագ Խորանին վարագոյրը միայն փակուած կը մնայ, մինչեւ որ աս շարա'կանը երգուի։ Շատ սրտայոյզ է «Բա'ց մեզ. Տէ'ր» ողբաձայն շարականը զոր դպիրները կ'երգեն ժողովրդին կողմէ։*

**Հարցումներ**. — Ե՞րբ կը տօնենք Ծաղկազարդը. — Յիսուս ի՞նչ ըրաւ. — Այս տօնին, եկեղեցիներն ի՞նչպէս կը զարդարուին. — Ինչո՞ւ կ'ըսուի Ծաղկազարդ. — Ո՞ր եկեղեցին կը կատարէ Դռնբացէքը եւ ինչի՞ նշան է. — Հին ատեն ժողովուրդը ո՞ւր կըսպասէր. — Հիմա ի՞նչպէս կ'ըլլայ։

---

## 5. ԴԱՍ. — ԱՒԱԳ ՇԱԲԱԹԸ

*Յիսուսի սիրոյ ու բարոյականի վսեմ դասերն այս շաբթու եկեղեցիին մէջ աւանդուելուն համար, այս շաբաթը* Աւագ, *այսինքն* Մեծ Շաբաթ *կոչուած է։ Աւագ երկուշաբթի, երեքշաբթի, չորեքշաբթի օրերը խորանը բաց է, այս երեք օրերն ալ տէրունական են իբրեւ շարունակութիւն Ծաղկազարդի, բայց ո'չ Արեւագալի ժամերգութիւն և ո'չ «Տէր ամենակալ» աղօթք կայ, Մեծ Պահքի միւս օրերուն պէս։ Ս. Պատարագ ալ չի մատուցուիր։*

**Աւագ Երկուշաբթի.** — *Այս իրիկուն Հայ. եկեղեցին Սուրբ Գրքէն Ծննդոց առաջին գլուխները կը կարդայ՝ յիշատակ աշխարհի ստեղծման ու նախածընողքի մեղանչելուն, և Աւետարանէն կը կարդացուի այն մասն ուր Քրիստոս կը յայտնէ Երուսաղէմ երթալու նպատակը, մատնուիլն ու մահուան դատապարտուիլը։*

**Աւագ Երեքշաբթի.** — *Յիսուս կը մարգարէանայ Տաճարին ու Երուսաղէմի կործանումն եւ անոնց նըկարագիրը կ'ընէ։*

*Տանուտէր Մարդուն եւ Իմաստուն Կոյսերուն առակներով Վերջին Դատաստանի պատկերները մեր աչքին առջեւ կը դնէ։*

**Աւագ Չորեքշաբթի.** — *Քահանայապետներ, ծերեր ու դպիրներ կը խորհին Յիսուսը բռնել։ Յուդա, տասն երկու առաքեալներէն մէկը, ստակի փոխարէն կը խոստանայ անոնց ձեռքը մատնել Յիսուսը։*

*Իրիկունը կը կարդացուի Աստուածաշունչէն Սոդոմ-Գոմոր քաղաքներու կործանման պատմութիւնը, ու Աւետարանէն՝ Յուդայի ընելիք վատ մատնութիւնը։ Յուդայի գործած նոյն չարաշահութիւնը կոչուեցաւ արծաթսիրութիւն։*

**Հարցումներ.** — Ի՞նչ կը նշանակէ Աւագ Շաբաթ։ — Ե՞րբ գոց կը մնայ խորանը։ — Աւագ Երկուշաբթի օրը ինչի՞ յիշատակ է։—Աւագ Երեքշաբթի օ՞րը։ Հին առեն Աւագ Երեքշաբթի օրը ի՞նչ կ'ընէին։ — Աւագ Չորեքշաբթի օրը ի՞նչ դէպքեր կը յիշատակուին։

---

## 6. ԴԱՍ. — ԱՒԱԳ ՇԱԲԱԹԸ [Շար.]

**Աւագ Հինգշաբթի.** — *Յիսուսի տնօրինական գործերը կը սկսին։ Ճաշու ժամուն, սաղմոսներէ ու գըր-*

*քերէ ետք, օրհնութեան աղօթքներ կը կարդացուին։ Յիսուս այսօր վերնատան մէջ կը հաստատէ Սուրբ Հաղորդութեան խորհուրդը՝ ըսելով, «Առէ՛ք, կերէ՛ք, այս է մարմինս»։ Աւետարանի ընթերցումէն ետք, «Հաւատամքի» ատեն կը բացուի սեղանն որ բոլորովին սպիտակ զարդարուած է։ Այնուհետեւ հանդիսաւոր Պատարագ կը մատուցուի։*

*Իրիկունը «Ոտնլուայի» արարողութիւն կը կատարուի, օրինակ Քրիստոսի խոնարհութեան ու մարդասիրութեան։ Արարողութիւնը կը սկսի «Ողորմեա՛ ինձ Աստուած» սաղմոսով, որուն կը յաջորդէ «Այսօր կանգնեցաւ աւազան մկրտութեան» շարականն, յետոյ աղօթքներ ու գեղեցիկ տաղեր։*

*Հինգշաբթի գիշեր կը կոչուի «Լացի գիշեր»։ Սեղանը կը փակուի սեւ վարագոյրով։*

**Աւագ Ուրբաթ.** — *Յորեկին, Քրիստոսի խաչելութեան ատեն տեղի ունեցած նշանաւոր դէպքերը կը կարդացուին։*

*Իրիկունը «Համբարձի» շարականէն ետք, կը կատարուի Թաղման կարգը մեծ Թափորով. Այս միջոցին կ'երգուի «Պարգեւատուն ամենեցուն» շարականը։*

**Աւագ Շաբաթ.** — *Զատկի Նախընթաց օրն է Աւագ Շաբաթ, ճրագալոյց։ Եկեղեցին՝ առտուն կը շարունակէ Քրիստոսի Թաղման կարգը. ժամերգութեան աւարտման կը կարդացուի գերեզմանի կնքման աւետարանը.*

**Ս. Զատկի առաւօտ.** — *Առտուան ժամերգութեան «Փառք ի բարձունս» երգէն առաջ, եպիսկոպոսը կամ քահանան՝ իբրեւ աւետաւոր հրեշտակ՝ կ'աւետէ Յիսուսի Յարութիւնն՝ ըսելով «Քրիստոս յարեա՛ւ ի*

մեռելոց »։ Եկեղեցին այսօր կ'երգէ Ներսէս Լամբրոնացիին շինած « Այսօր յարեաւ ի մեռելոց » գեղեցիկ շարականը։

**Հարցումներ**. — Աւագ Հինգշաբթի ի՞նչ կը կարդացուի։ Խրիկունն ի՞նչ կը կարդացուի. — Յիսուսի տնօրինական գործերն ե՞րբ կը սկսին։ — Յիսուս ո՞ւր կատարեց Հաղորդութեան խորհուրդը. — Ե՞րբ կը բացուի սեղանը։ — Ե՞րբ եւ ինչի՞ օրինակ կը կատարուի Ոտնլուայ։ — Ի՞նչ կ'երգուի։ — Ե՞րբ է լացի գիշերը. — Աւագ Ուրբաթ ցորեկին ի՞նչ կը կատարուի. — Խրիկո՞ւնը։ — Զատկէն առաջ ո՞ր օրը դարձեալ ճրագալոյց է։ — Առտուն ի՞նչ կ'ընեն։ — Ե՞րբ կ'աւետեն « Քրիստոս յարեաւ »։ — Այսօր եկեղեցին ի՞նչ կ'երգուի։ — Ո՞վ գրեց այս շարականը.

---

## 7. ԴԱՍ. — ՅԻՍՈՒՍԻ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԸ

**Յարութենէն ետք**, Յիսուս քառասուն օր աշակերտներուն երեւնալով զանոնք կը հրահանգէ։ Կը հրամայէ Աւետարանը քարոզել բոլոր աշխարհի, բայց կը պատուիրէ որ սպասեն, Երուսաղէմի մէջ, այն շնորհքին զոր պիտի ընդունէին Ս. Հոգիին գալովը։ Երեւցաւ նաեւ Մարիամ Մագդաղինացիին եւ ուրիշ հինգ հարիւր հաւատացեալի, եւ քաջալերեց զանոնք։

**Յիսուսի Համբարձումը**. — Քառասուն օր ետք, Յիսուս առաքեալները տարաւ Բեթանիա ու Ձիթենիներու լեռը հանեց զանոնք։ Հոն՝ բազկատարած՝ օրհնութիւն տուաւ եւ վերացաւ երկինք։ Ամպը զանիկա ծածկեց առաքեալներու աչքէն։ Մինչդեռ անոնք ապշած՝ Յիսուսը կը դիտէին, երկու հրեշտակ, սպիտակ հանդերձներով, մարդու կերպարանքով երեւցան ու ըսին անոնց. « Այս Յիսուսը որ երկինք վերացաւ, այնպէս ալ պիտի գայ որ

*մը։» Այն ատեն առաքեալներն երկրպագելով՝ ուրախութեամբ դարձան Երուսաղէմ ու միշտ տաճարին մէջ կը գովէին եւ կ՚օրհնէին Աստուած, եւ կը սպասէին երկնային զօրութիւնն ընդունելու։*

*Համբարձման տօնը միշտ Հինգշաբթի օր կը պատահի եւ այս տօնին կ՚երգուի « Համբարձաւ Տէրն մեր » շարականը։*



**Երկրորդ Ծաղկազարդ.** — *Համբարձման տօնին յաջորդ Կիրակին կը կոչուի* **Երկրորդ Ծաղկազարդ**։ *Այս երկրորդ Ծաղկազարդը որ յիշատակ է Յիսուսի վերին Երուսաղէմ մտնելուն՝ հրեշտակներու առաջնորդութեամբ՝ միայն մեր եկեղեցիին յատուկ է։*

*Այս տօնին երգուած « Մեծահրաշ » շարականը,*

*զոր Գրիգոր Վկայասէր կաթողիկոսը գրած է, կը պատմէ սոյն աւանդութիւնը։*

**Հարցարան.**— Յիսուս իր յարութիւնէն ետքը, աշակերտներուն քանի՞ օր երեւցաւ եւ ի՛նչ ըրաւ։ — Որո՞ւն երեւցաւ նախ։ — Քառասուն օր ետք, Յիսուս ի՞նչ ըրաւ իր աշակերտները։ — Լերան վրայ ի՞նչ եղաւ։ – Երբ Յիսուս երկինք վերացաւ, աշակերտներն ի՞նչ ըրին։ — Համբարձման տօնը ե՞րբ կը կատարենք։ —Այս տօնին ի՞նչ կ'երգուի։ – Յաջորդ օրը ի՞նչ կը կոչուի։ — Ինչի՞ յիշատակ է։ — Այս տօնին ի՞նչ կ'երգուի։



8 ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ Բ. ԱՄՍՈՒԱՆ

1. **Վարդավառ կամ Այլակերպութիւն.** — *Այլակերպութիւնը առաջ Վարդավառ կը կոչուէր. Լուսաւորիչի հրամանաւ Այլակերպութիւն կոչուեցաւ։*

*Վարդավառին աղաւնի թռցընելու, ջուր սրսկելու սովորութիւնը շատ հին է, մեր կռապաշտ նախնիքներէն մնացած։*

2. **Յիսուսի խաչելութիւնն ու թաղումը.** — *Յիսուս ուրբաթ առտու խաչուեցաւ Պոնտացի Պիղատոսին հրամանով. Յիսուս խաչին վրայ աղօթեց Աստուծոյ որ ներէ զինք խաչողներուն, որովհետեւ չէին գիտեր թէ ի՛նչ կ'ընեն։*

*Ժամը վեցին արեգակը խաւարեցաւ եւ բոլոր աշխարհ մթնեց։*

*Ժամը իննին գերեզմանները բացուելով՝ շատեր յարութիւն առին։*

3. **Յիսուսի յարութիւնը.** — *Յիսուսի մօտիկ ազգական կիներ գերեզմանին այցելութեան գալով՝ տեսան որ Յիսուս յարութիւն առած է։*

*Յիսուսի յարութիւն առած օրը կը կոչուի* Զատիկ.

4. **Ծաղկազարդ.** — *Զատկէն ութ օր առաջ, Յիսուսի Երիքովէն Երուսաղէմ մտնելու յիշատակը Ծաղկազարդ կը կոչուի։ Իրիկունը Դռնբացէքի արարո-*

դութիւն կը կատարուի։ Այդ միջոցին Աւագ խորանին վարագոյրը կը գոցուի։

5. **Աւագ շաբաթ.** — Յիսուս իր սիրոյ ու բարոյականի վսեմ դասերն այս շաբթուն աւանդած ըլլալով Աւագ շաբաթ կը կոչուի։

Աւագ Բշ. օր աշխարհի ստեղծման յիշատակն է։

Աւագ Գշ. օր Յիսուս կը մարգարէանայ Տաճարին կործանումը։ Աւագ Դշ. օր Յուդայ կը խոստանայ Յիսուսը մատնել։

6. **Աւագ հինգշաբթի, Աւագ ուրբաթ, Աւագ շաբաթ** — Աւագ Եշ օրը, Յիսուս վերնատան մէջ կը կատարէ Ս. Հաղորդութեան խորհուրդը։ Իրիկունը ոտնալուայի արարողութիւնը կը կատարուի։ Աւագ Եշ. օր «Լացի գիշեր» կը կոչուի։

Աւագ Ուրբաթ իրիկուն, Թաղման մեծ կարգը կը կատարուի թափորով։

Աւագ շաբաթ իրիկուն Ճրագալոյց է, և պատրաստութիւն Ս. Զատկի տօնին։

Ժամերգութեան աւարտման, կը կարդացուի գերեզմանի կնքման աւետարանը։

**Զատիկ.** — Յաջորդ օրը Զատիկ է և «Քրիստոս յարեաւ ի մեռելոց» կ'աւետենք իրարու։

7. Յիսուս իր Յարութենէն ետք, 40 օր աշակերտները հրահանգելէ ետք, Համբարձաւ Ձիթենիներու լերին վրայ, մինչդեռ աշակերտները ապշած՝ Յիսուսի վերելքը կը դիտէին։

Հրեշտակներն ըսին թէ Յիսուս դարձեալ պիտի գայ օր մը։ Այն ատեն, առաքեալներն ուրախութեամբ Երուսաղէմ դարձան և տաճարին մէջ միշտ կը գովէին և կ'օրհնէին Աստուած։

Համբարձման տօնին յաջորդ կիրակին կը կոչուի **Երկրորդ Ծաղկազարդ** որ մեր եկեղեցիին յատուկ է։



# ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

## 1. ԴԱՍ. — Կ. ՊՈԼՍՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

1. **Կ. Պոլսոյ հիմնարկութիւնը.** — *Քրիստոսէ* 658 *տարի առաջ, Մեգարացի գաղթականներ հիմնեցին* Բիւզանդիոն *քաղաքը զոր Մեծն Կոստանդիանոս կայսրը Քրիստոսի* 330 *թուին նորոգելով ու ընդարձակելով՝ կոչեց* Նոր-Հռոմ։ *Յետագայ դարերուն մէջ՝ Նոր-Հռոմը Կ. Պոլիս կոչուեցաւ Մեծն Կոստանդիանոսի անունով։*

2. **Կ. Պոլիս կը շէննայ.** — *Մեծն Կոստանդիանոսի յաջորդ Կոստանդ կայսրը առաջ տարաւ քաղքին շինութիւնը* (337—361)։ *Վաղէս* (364—378) *շինեց* Ջրամբարը (Պին պիր տիրէկ) *եւ Մեծն Թէոդոս ալ զարդարեց քաղաքը*։ 395*ին ոստանիկ քաղաք դարձաւ*։

3. **Կ. Պոլսոյ փառաւոր առումը.** — *Սուլթան Մէհէմմէտ Բ. Ֆաթիհ*, 1453 *Մայիս* 29*ին*, *Կ. Պոլիս քաղաքն առաւ* 40 *օր պաշարելէն ետք*։ *Նորոգել տուաւ* Եօթն աշտարակները (Եէտի-գուլէ) *եւ հին պալատը. հրամայեց կառուցանել* Էյուպի *ու* Ֆաթիհին *մզկիթները*։

4. **Կ. Պոլիս մայրաքաղաք Օսմանեան կայսրութեան.** — 1453 էն ի վեր Օսմ. Կայսրութեան մայրաքաղաքն եղաւ Կ. Պոլիս։ *Անկէ առաջ նախ Պրուսա քաղաքն եւ յետոյ Էտիրնէ քաղաքն եղած են*։ *Օսմանցի Սուլթանները քաղաքը գեղազարդեցին հոյակապ պալատներով, մզկիթներով ու բարեգործական հաստատութիւններով*։

**Հարցումներ.** — 1. Ե՞րբ հիմնուեցաւ Կ. Պոլիսը. — Ո՞վ նորոգեց եւ որո՞ւ անունով կոչուեցաւ քաղաքը։— 2. Որո՞նք առաջ տարին քաղքին շինութիւնը։ — Ե՞րբ ոստանիկ քաղաք դարձաւ. — 3. Օսմանցի ո՞ր Սուլթանը տիրեց քաղքին։ — Ֆաթիհ Սուլթան Մէհէմմէտ ինչե՞ր շինել տուաւ։— 4. Կ. Պոլիս ե՞րբ մայրաքաղաք եղաւ Օսմ. կայսրութեան։ — Անկէ առաջ ո՞ր քաղաքներն էին. — Օսմանցի Սուլթանները ինչո՞վ գեղազարդեցին քաղաքը.

---

## 2. ԴԱՍ. — Կ. ՊՈԼՍՈՅ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ

5. **Կ. Պոլսոյ կառավարութիւնը.** — *Ոստիկանութիւն, Թաղապետութիւն ու Դատարաններ կը կազմեն* Կ. Պոլսոյ կառավարութիւնը։

6. **Ոստիկանութեան պաշտօնը.** — Ոստիկանութիւնը կը հսկէ *որպէս զի վնաս մը չգայ պարկեշտ քաղքեցիներուն, սխալ բանի մը վրայ վէճ կամ կռիւ չպատահի, անհատներուն իրաւունքները չկորսուին։*

*Ոստիկանութիւնը կը կազմեն ոստիկան-զինուորները, ոստիկանները,* գոմեսէրները։ *Ասոնց բնակած ու սպասած շէնքերը* պահականոց *կը կոչուին։ Պահականոցին պետն է Հազարապետ մը որուն յանձնուած է բոլոր թաղին հսկողութիւնը և անոնց ալ պետն է Ոստիկանութեան Նախարարը։*

7. **Թաղապետութեան պաշտօնը.** — Թաղապետութիւնը կը հսկէ *փողոցներուն մաքրութեան, աւլել ու ջրել կուտայ, հոգ կը տանի որ ծախուած սնունդները լաւ ըլլան, եւ հանրութիւնը գէշ սնունդ չը գնէ, ժողովուրդին առողջութիւնը չխանգարի։*

*Թաղապետական պաշտօնեաներու բնակած տեղը* Թաղապետութիւն *կը կոչուի։ Թաղապետական շրջանակներն ունին իրենց Թաղապետարանը։ Թաղապետ-*

ներուն կը հսկէ Շահապետութիւնը [Շէհր–էմանէթի]։ Կ. Պոլսի մէջ կայ տասը Թաղապետական Շրջանակ։

8. **Դատաւորներու պաշտօնը.** — Ժողովրդին մէջ սխալումներու հետեւանքով ծագած վէճերն ու դատերը կը քննեն, կը դատեն ու վճիռ կ'արձակեն՝ անմեղութիւնն ու արդարութիւնը երեւան հանելու համար։ Կ. Պոլսոյ մեծ դատարանը Այա-Սօֆիայի մօտ մեծ ապարանք մըն է։ Դատաւորներու պետը կը կոչուի Արդարութեան Նախարար։

---

Հարցումներ. — 5. Որո՞նք կը կազմեն Կ. Պոլսոյ կառավարութիւնը։ — 6. Ոստիկանութեան պաշտօնն ի՞նչ է։ — Որո՞նք կը կազմեն Ոստիկանութիւնը։ — Ո՞վ կը կոչուի Ոստիկանութեան նախարար։ — 7. Ի՞նչ է Թաղապետութեան պաշտօնը։ — Ո՞վ կը հսկէ Թաղապետներուն վրայ։ 8. — Ի՞նչ է դատաւորներու պաշտօնը։ — Ո՞ւր է Կ. Պոլսոյ մեծ դատարանը։ — Դատաւորներու պետը ի՞նչ կը կոչուի։

---

## 3. ԴԱՍ. — Կ. ՊՈԼԻՍ ՔԱՂԱՔԸ

9. **Քաղաքին դիրքը։** — Կ. Պոլիս կամ Ստամպօլ եռանկիւնաձեւ հոյակապ քաղաք մըն է Մարմարա ծովուն, Վոսփորի Նեղուցին ու Ոսկեղջիւրին եզերքը։

Վոսփորի Նեղուցը Մարմարան ու Սեւ ծովը իրար կը միացընէ։ Վոսփորէն կազմուած է Ոսկեղջիւրի ծոցը որ Ղալաթիոյ ու Ստամպօլի միջեւ կ'իյնայ։

Կ. Պոլսոյ եռանկիւնն ունի երեք կող. Ոսկեղջիւրը հիւսիսային կողին առջեւ է. Մարմարան հարաւայինին առջեւ. գագաթն ալ, արեւելեան կողմը, Վոսփորի Նեղուցին բերանը. իսկ խարիսխը արեւմտեան կողմն է ցամաքին կցուած։

10. **Կ. Պոլսոյ դուռները.** — *Քաղաքը հին ատեն շրջապատուած էր պարիսպով մը որոնցմէ շատերը դեռ կան։*

*Պարիսպը շատ դուռներ ունի։ Հին ատեն գիշերը կը գոցուէին ատոնք։ Հիւսիսային կողմը, Ոսկեղջիւրի ծոցին եզերքը բացուած դուռներն են, արեւմուտքէն արեւելք,* Ֆէնէր գաբու, Այա գաբու *և* Օտուն գաբու։ *Հարաւային կողմը, Մարմարայի եզերքը, արեւելքէն արեւմուտք,* Պահճէ գաբու, Տավուշ բաշա գաբու, Եէնի գաբու *և* Սամաթիա գաբու։

*Արեւմտեան կողմը, ցամաքին վրայ, հարաւէն դէպ ի հիւսիս բացուած են* Եէտի գուլէ գաբու, Սիլիվրի գաբու *և* Թօփ գափու։

*Կ. Պոլսոյ թաղերն այդ տասն ու չորս դուռնէն ներս են։*

---

**Հարցումներ.** *Կ. Պոլիս քաղաքն ի՞նչ ձեւ ունի։ — Վոսփորի նեղուցն ո՞ր ծովերը կը ձեւացնէ եւ ո՞ր ցամաքները կը բաժնէ։ — Ո՞ւրկէ կազմուած է Ոսկեղջիւրի ծոցը։ — Որո՞նք են Կ. Պոլսոյ եռանկիւնի երեք կողը։ — Որո՞նք են Կ. Պոլսոյ դուռները։ — Հիւսիսային կողմը ո՞ր դուռները կան։ — Հարաւային կո՞ղմը։ — Արեւմտեան կո՞ղմը։ — Ո՞ւր են Կ. Պոլսոյ Թաղերը։*

---

## 4. ԴԱՍ. — Կ. ՊՈԼՍՈՅ ԹԱՂԵՐԸ

11. **Թաղային բաժանում.** — *Քաղաքը բաժնուած է բազմաթիւ թաղերու որոնցմէ ոմանք Ոսկեղջիւրի եզերքը, ոմանք Մարմարայի եզերքը, որ մէկն արեւմտեան կողմը, պարսպին կից, եւ մնացեալներն ալ ներսի մասին մէջ են։*

12. **Հիւսիսային թաղեր.** — *Հիւսիսային կողմը, Ոսկեղջիւրի եզերքը, արեւելքէն դէպի արեւմուտք, կան* Սիրքեճի, Օտուն գաբու, Ճիւպալի, Ֆեներ ու Պալաթ *թաղերը*։

*Օտուն գաբու թաղն ունի* Պաղճէ գաբու *եւ* Օտուն գաբու *թաղային շրջանակները՝ Ոսկեղջիւրի եզերքը*։

*Ֆէնէր ունի թաղային համանուն շրջանակը, ու Այա գաբու, Ոսկեղջիւրի եզերքը*։

*Պալաթ ունի թաղային համանուն շրջանակը*, Պալաթ գաբու, *նմանապէս Ոսկեղջիւրի եզերքը*։

13. **Հարաւային թաղեր.** — *Հարաւային կողմը, Մարմարայի եզերքը, արեւելքէն դէպի արեւմուտք կան* Այա Սոֆիա, Գում գաբու, Լանկա *ու* Սամաթիա։

*Գում գաբուի թաղային շրջանակն է համանուն թաղը, Մարմարայի եզերքը*։

*Լանկա ունի* Տավուշ փաշա *և* Եէնի գաբու՝ *Մարմարայի եզերքը*։

*Սամաթիա ունի* Սամաթիա գաբու, Նարլը գաբու, Եէտի գուլէ՝ *Մարմարայի եզերքը, եւ* Սիլիվրի գաբու՝ *ցամաքի կողմէն*։

14. **Արեւմտեան թաղ.** — *Կ. Պոլսոյ արեւմտեան կողմը, պարսպին կից կը գտնուի* Թօփ գաբու *թաղը*։

15. **Ներսի թաղեր.** — *Կ. Պոլսոյ ներսի թաղերն են* Ֆաթիհ, Եէնի Պաղճէ, Աք սէրայ, Պայազիտ *ու* Սիւլէյմանիէ։

---

**Հարցումներ.**—11. Կ. *Պոլիս ի՞նչպէս բաժնուած է։—Ո՞ր թաղերը Ոսկեղջիւրի, Մարմարայի եզերքն են։ — Արեւմտեան կո՞ղմը։ — Ոսկեղջիւրի եզերքը որո՞նք կան։ — Օտուն գաբուն ո՞ր թաղային շրջանակներն ունի։ — Ֆէնէ՞ր։ — Պալա՞թ։ — Հարաւային թաղերն որո՞նք են։ — Գում գաբուն ո՞ր թաղ. շրջանակներն ունի։ — Լանկա՞։ — Սամաթիա՞։ — Արեւմըտեան կողմը ո՞ր թաղը կայ։* — 15. *Որո՞նք են ներսի թաղերը։*

## 5 ԴԱՍ. — ՎԱՐՉԱԿԱՆ ԲԱԺԱՆՈՒՄ

16. **Երեք քաղաք՝ մէկ քաղաք.** — *Օսմանեան Կայսրութեան մայրաքաղաքը կը բաղկանայ երեք առանձին քաղաքէ*, Ստամպօլ, Բերա, Իւսկիւտար։ *Ասոնք իրարմէ կը բաժնուին Վոսփորի նեղուցով եւ Ոսկեղջիւրի ծոցով. Ասոնցմէ մէկը, Իւսկիւտար*։ Ասիական եզերքն *է, միւս երկուքն ալ՝* Եւրոպական եզերքը։ *Բերա ու Կալաթա Ոսկեղջիւրի հիւսիսային եզերքն են*։

17. **Թաղապետական շրջանակ.** — *Երեք քաղաքները սա* Թաղապետական շրջանակ*ներն ունին*, 1. Սուլթան Պայազիտ, 2. Սուլթան Մէհմէտ, 3. Ճէրահ բաշա (*Սամաթիա*), 4. Պէշիքթաշ, 5. Եէնի գիւղ, 6. Բերա—Կալաթա, 7. Պէօյիւք տէրէ, 8. Գանլըճա, 9. Իւսկիւտար, 10. Գատը գիւղ։

18. **Բնակիչ.** — *Կ. Պոլսոյ բնակիչներուն թիւն է* 1 *միլիոն կամ քիչ մը աւելի. բազմամարդութեամբ աշխարհիս տասներորդ քաղաքն է։ Առաջին բազմամարդ քաղաքն է* Լոնտոն (*Անգլիա*)։

19. **Կ. Պոլսոյ բլուրները.** — *Ստամպօլ սա եօթը բլուրին վրայ կը բարձրանայ. արեւելեան կողմէն սկսինք*, 1. Սէրայ պուռնու *կամ* Այա Սօֆիա, 2. Սուլթան Պայազիտ, 3. Սէրասքէրիյէ, 4. Ֆաթիհիյէ, 5. Սէլիմիյէ, 6. Թէքֆիւր սէրայ, 8. Էտիրնէ գաբու։

---

**Հարցումներ.**—16. Կ. *Պոլիս քանի՞ քաղաքէ կը բաղկանայ։ — Ո՞րը Ասիական եզերքն է — Որո՞նք Եւրոպական եզերքը. —Կալաթա ու Բերա Ոսկեղջիւրի ո՞ր կողմը կը գտնուին։*—17. Կ. *Պոլիս քանի՛ Թաղապետութեան բաժնուած է.*—18. *Քանի՞ միլիոն բնակիչ ունի. — Բազմամարդութեամբ աշխարհիս քանի՞երորդ քաղաքն է. —* 19. *Որո՞նք են Կ. Պոլսոյ բլուրները.*

## 6 ԴԱՍ. — ՊԱԼԱԹ ՈՒ ԹՕՓ ԳԱԲՈՒ

20. Պալաթ. — Պոլսոյ հիւսիսային ու արեւմըտեան կողմը, Ոսկեղջիւրի եզերքը կը գտնուի Պալաթ որ երկու դուռ ունի. մէկը Պալաթ գաբու՝ Ոսկեղջիւրի վրայ, միւսը՝ Էտիրնէ գաբու որ ցամաքին վրայ կը բացուի։

21. Բնակիչ. — Պալաթու ազգաբնակութիւնը կը կազմեն Թուրք, Հայ, Յոյն եւ Հրեայ։

22. Պալաթու Ս. Հրեշտակապետ եկեղեցին. — Հայերը Պալաթու մէջ ունին Ս. Հրեշտակապետ անունով եկեղեցի մը ու դպրոց մը։

23. Գարակէօմրիւկ. — Պալաթէն վեր է Գարակէօմրիւկ ուր կար Ս. Յովհան Ոսկեբերան եկեղեցին, նշանաւոր ուխտատեղի, «Պզտիկ Արմաշ» կոչուած, որ 1900ի ամառը այրեցաւ։

24. Ֆէնէր. — Բուն Ֆէնէրի մէջ է Յոյներու Պատրիարքարանը՝ Ս. Գէորգ եկեղեցին ու վարժարանը։

Ֆէնէրի զառիվերին վրայ է Խաբիճիէ մզկիթը։

Ֆէնէրի ու Պալաթի մէջտեղը, ծովեզերքը, կայ պուլկարական երկաթաշէն եկեղեցին։

25. Թօփ գաբու. — Քաղաքին արեւմտեան կողմն է Թօփ գաբու, որուն դուռը կը բացուի ցամաքին վրայ։

Ասկէ մինչեւ Ազ սէրայ երկնցած է թրամուէյի գիծ մը որ կ'երթայ մինչեւ Էմին Էօնիւ։

Թօփ գափուի բնակիչները՝ Թուրք, Հայ և Յոյն։

Պարսպին քովն է Սուլու գուլէ ուր կը բնակին բոշաները։

Հայերն ունին Ս. Նիկողոս եկեղեցին ու դպրոցը։

---

Հարցումներ. — 20. Ո՞ւր կը գտնուի Պալաթ։ — 21. Որո՞նք կը կազմեն Պալաթի ազգաբնակութիւնը։ — 22. Հայերը ո՞ր եկեղեցին

*ունին.—23. Ո՞ւր կը գտնուի Գարակէօմրիւկ։ — Ո՞ր եկեղեցին կար։ —24. Ցոյները Ֆէնէրի մէջ ի՞նչ ունին։—Պուլկարնե՞րը։— 25. Ո՞ւր է Թօփ գափու ։ — Ասկէ մինչեւ Աք-սէրայ ի՞նչ կայ։ — Որո՞նք կը բնակին Սուլու գուլէ։ — Ո՞ւր է Ս. Նիկողոս եկեղեցին .*

---

## 7 . ԴԱՍ. — ՍԱՄԱԹԻԱ

26. *Սթամպօլի հարաւ-արեւմտեան կողմը, Մարմարայի եզերքը, կը գտնուի Սամաթիա որ չորս դուռ ունի.* Նարլը գաբու Սամաթիա գաբու՝ *ծովու կողմէն ,* Եէտի գուլէ *և* Սիլիվրի գաբու՝ *ցամաքի կողմէն ։*

27. **Բնակիչ.** — *Սամաթիոյ մէջ կը բնակին Թուրք, Հայ, Յոյն ազգեր և Եւրոպացի գաղթականներ ։*

28. **Սամաթիոյ Հայոց եկեղեցիները.** — *Հայերը Սամաթիոյ մէջ ունին երեք եկեղեցի, Ս. Գէորգ, Ս. Յակոբ և Ս. Յովհաննէս, ու դպրոց ։*

*Նարլը Գաբուի մէջ է Ս.* Յովհաննէս աւետարանիչ ։ *Ազգային հիւանդանոցը նախապէս այդ եկեղեցիին շրջափակին մէջ էր ։*

29. **Նարլը գաբուի հնութիւնները.** — *Նարլը գաբուի Թաղին համանուն դրան քով է* Միրախոր մեսճիտը. *Նարլը գաբուի եւ Եէտի գուլէի մէջտեղ կայ* Մերմեր գաբու ( *Մարմարայի աշտարակը* ) *որուն հիմերը ջրի մէջ են ։*

*Մէրմէր գաբուի ձախ կողմը կայ* Եէտի գուլէ, *աջ կողմն ալ՝ համանուն աշտարակները ։*

---

**Հարցումներ ։—26.Ո՞ւր** կը գտնուի Սամաթիա ։—**27.Որո՞նք** կը բնակին Սամաթիա ։—**28.**Հայերը *հոս քանի՞ եկեղեցի ունին։* — **29.**Որո՞նք են Նարլը գաբուի հնութիւնները.

---

## 8. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ ԵՐԿՐՈՐԴ ԱՄՍՈՒԱՆ

**Կ. Պոլսոյ պատմութիւնը.** —(1–4) *Կ. Պոլիս նախապէս կը կոչուէր* Բիւզանդիոն. *Այս՝ Մեծն Կոստանդիանոսի անունով Կ. Պոլիս կոչուեցաւ։*

*Օսմանցիները* 1453 *Մայիս* 29*ին կ'առնեն քաղաքը։*

**Կ. Պոլսոյ կառավարութիւնը.** — (5—8) *Ոստիկանութիւնը, Թաղապետութիւնն ու Դատաւորները կը կազմեն Կ. Պոլսոյ կառավարութիւնը։*

**Քաղքին դիրքը,** — (9—10) *Կ. Պոլիս եռանկիւնաձեւ դիրք մ'ունի՝ Վոսփորի նեղուցը ու Ոսկեղջիւրի եզերքը։*

*Վոսփորի նեղուցէն՝ որ Մարմարան Սեւ ծովու հետ կը միացնէ՝ կազմուած է Ոսկեղջիւրի ծոցը։*

*Կ. Պոլիս շրջապատուած է պարսպով մը որ շատ դուռ ունի։*

**Կ. Պոլսոյ թաղերը.** — (11—15) *Քաղաքը բաժնըւած է բազմաթիւ թաղերու. Հիւսիսային թաղերը Ոսկեղջիւրի եզերքն են. Հարաւային թաղերը Մարմարայի եզերքը, Արեւմտեան թաղը Թօփ գաբուի պարիսպին կից է։*

**Վարչական բաժանում.** — (16—19). *Կ. Պոլիս շինուած է 7 բլուրի վրայ եւ երեք առանձին քաղաքէ կը բաղկանայ,* Ստամպօլ, Բէրա *և* Իւսկիւտար։ *Կայ* 10 Թաղապետական շրջանակ։

**Պալաթ ու Թօփ գաբու.** (20—25). *Պոլսոյ հիւս. արեւմտեան կողմը, Ոսկեղջիւրի եզերքն է Պալաթ ուր կայ Ս. Հրեշտակապետ եկեղեցին։*

*Գարակէօմրիւկի մէջ՝ Ս. Յովհան Ոսկեբերան։*

*Ֆէնէրի մէջ կան* Ֆաթիհի *մզկիթը, Յոյն Պատրիարքարանն ու վարժարանը, եւ Պուլկար եկեղեցին։*

**Սամաթիա.** (26—29). *Ստամպօլի հարաւային արեւմտեան կողմն է Սամաթիա որ չորս դուռ ունի։*

*Հայերը հոս ունին երեք եկեղեցի եւ դպրոց։*



# ԹՈՒԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## 1 ԴԱՍ. — ՀԱՐԻՒՐ.

1. **Հարիւր թիւը.** — *Եթէ* իննսունը ինին *վրայ* մէկ *աւելցընենք, կ'ունենանք հարիւր։*

2. **Հարիւրը կ'արժէ տասը տասնաւոր.** — 99*ին վրայ* 1 *աւելցընել կամ* 90*ին վրայ* 10 *աւելցընել՝ մի եւ նոյն բանն է. եւ ինչպէս որ* 90*ը կ'արժէ ինը տասնաւոր, այսպէս ալ* հարիւրը կ'արժէ տասը տասնաւոր *եւ կը գրուի* 100։

3. **Հարիւրաւոր.** — *Հարիւրը* մէկ հարիւրաւոր *ալ կ'ըսուի։ Ուրեմն, ինչպէս որ տասը միաւորով մէկ տասնաւոր կազմեցինք, կրնանք տասը տասնաւորով ալ մէկ հարիւրաւոր կազմել։*

**1.** — Ի՞նչ *թիւ կ'ունենանք երբ 99ին վրայ 1 աւելցընենք։* — **2.** *Քանի՞ տասնաւոր կ'ընէ 100ը* — **3.** — *Ուրիշ ի՞նչպէս կ'ըսուի 100ը.*

---

**Վարժութ.** — **1.** *Հակառակէն գրեցէք* 100*էն* 90 *թիւերը։* — **2.** *Գրով գրեցէք* 69*էն* 77 *թիւերը։* — **3.** *Սա թիւերուն մէջ քանի՞ տասնաւոր եւ քանի՞ միաւոր կայ.* 39, 87, 40, 67, 29, 34, 92, 14։

---

## 2. ԴԱՍ. — ՀԱՐԻՒՐԱՒՈՐՆԵՐ.

4. **Հարիւրաւորները ի՞նչպէս կը կազմուին.** — *Սա խոշոր լուցկիին տուփը պարպենք հոս, սա սեղանիկին վրայ. ջոկոյ մէկիկ մէկիկ առնելով տասնակոյտ*

հատ իրարու քով դնենք ու թելով մը կապենք. այս առաջին կապը մէկ տասնաւոր է ։ Տասը հատ այսպէս կապենք եւ տասն ալ քովէ քով բերելով խոշոր թելով մը մէկ ծրար ընենք. այս ծրարը կը պարունակէ տասը տասնաւոր, եւ հարիւր հատ լուցկի է ։ Ուրեմն սա խոշոր ծրարը մէկ հարիւրաւոր ըսել է ։ Այս կերպով մենք կրնանք՝ ինչպէս տասնաւոր, նոյնպէս հարիւրաւոր արժող ծրարներ շինել ։

4. — Հարիւր լուցկի ունենալու համար ի՞նչպէս հաշուելու է ։

Վարժութ. — 4. 2էն սկսեալ մինչեւ 40, գրեցէք բոլոր թիւերը 2 առ 2 ։ — 5. Մի եւ նոյն թիւերը հակառակ կողմէն գրեցէք 40էն սկսեալ ։ — 6. 3էն սկսեալ մինչեւ 30 թիւերը գրեցէք 3 առ 3 ։ — 7. 40էն մինչեւ 100 թիւերը գրեցէք 2 առ 2 ։

## 3 ԴԱՍ. — 100էն 199

5. **Ի՞նչպէս կը համրեն հարիւրաւորով.** — Հարիւրաւորներն ալ միաւորներու եւ տասնաւորներու պէս կարելի է համրել ։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Մէկ | հարիւրաւոր | կամ | հարիւր | կը գրուի | 100 |
| Երկու | » | » | երկու հարիւր | » | 200 |
| Երեք | » | » | երեք հարիւր | » | 300 |
| Չորս | » | » | չորս հարիւր | » | 400 |
| Հինգ | » | » | հինգ հարիւր | » | 500 |
| Վեց | » | » | վեց հարիւր | » | 600 |
| Եօթը | » | » | եօթը հարիւր | » | 700 |
| Ութը | » | » | ութը հարիւր | » | 800 |
| Ինը | » | » | ինը հարիւր | » | 900 |

6. Հարիւրէն *սկսած՝ կրնանք համրել անոր վրայ աւելցնելով* 1*էն մինչեւ* 99 *թիւերը զոր արդէն կը ճանչնանք։*

| | | | |
|---|---|---|---|
| *Հարիւր մէկ կը գրուի* | 101 | *Հարիւր տասը կը գրուի* | 110 |
| *Հարիւր երկու* » | 102 | *Հարիւր տասնը մէկ* » | 111 |
| *Հարիւր երեք* » | 103 | *Հարիւր տասն երկու* » | 112 |
| *Հարիւր չորս* » | 104 | *Հարիւր տասն երեք* » | 113 |
| *Հարիւր հինգ* » | 105 | *Հարիւր տասնը չորս* » | 114 |
| *Հարիւր վեց* » | 106 | *Հարիւր տասնը հինգ* » | 115 |
| *Հարիւր եօթը* » | 107 | *Հարիւր տասնը վեց* » | 116 |
| *Հարիւր ութը* » | 108 | *Հարիւր տասնը եօթը* » | 117 |
| *Հարիւր ինը* » | 109 | *Հարիւր տասնը ութը* » | 118 |
| | | *Հարիւր տասնը ինը* » | 119 |

*Այսպէս կրնանք հաշուել մինչեւ հարիւր իննսունը ինը, որ կը գրուի* 199։

5. — Ի՞նչպէս կը համրուին հարիւրաւորներ։ — 6. — Ի՞նչպէս կը համրուի 100էն մինչեւ 199։

**Վարժութ.** — **8.** *Գրով գրեցէք հետեւեալ թիւերը.* 17, 23, 67, 107, 43, 137, 157, 127, 71, 32, 76, 171, 173, 175, 120, 16, 19, 45, 89, 136, 148, 119, 67, 108, 91, 54, 98, 163, 184, 191, 187, 179։

## 4. ԴԱՍ. — 200էն 999

7. — **Հարիւր իննսունը ինը եւ մէկ՝** *կ'ընէ* **երկու հարիւր**, *որ կը գրուի* 200։ 200*էն սկսելով առաջին* 99 *թիւերը՝* 1*էն մինչեւ* 99՝ *վրան կ'աւելցնենք եւ կը համրենք մինչեւ երկու հարիւր իննսունը ինը որ կը գրուի* 299։ *Ետքը այս* 299*ին վրայ* 1 *աւելցնելով*

*կը ստանանք* **երեք հարիւր**, 300. *եւ այսպէս շարունակելով կը հասնինք մինչեւ ինը հարիւր իննսուն եւ ինը կամ* 999։

**Զ. Ի՞նչ թիւ կ'ունենանք եթէ 199ին վրայ աւելցընենք 1 թիւը։ — 200էն վեր ի՞նչպէս համրելու է.**

**Վարժութ. — 9.** *Գրով գրեցէք* 125 *գինուոր*, 330 *ոչխար*, 197 *կոճակ*, 274 *երես*, 339 *կով*, 68 *ղրուշ*։ — **10.** *Թուանշանով գրեցէք երկու հարիւր երսունը հինգ օխա գինի, հարիւր վաթսունը ինը ձի, երկու հարիւր եօթանասունը հինգ աթոռ*։ — **11.** *Չէն մինչեւ* 62 *թիւերը* 3 *առ* 3 *համրեցէք*։

---

## 5 ԴԱՍ. — ԵՐԵՔ ԹՈՒԱՆՇԱՆ ՈՒՆԵՑՈՂ ԹԻՒԵՐ

8. — *Արդէն սորվեցանք թէ ի՛նչպէս կը չինուին հարիւրին եւ երկու հարիւրին մէջտեղ գտնուած թիւերը եւ համրեցինք հարիւրէն մինչեւ ինը հարիւր իննսուն եւ ինը*։

*Ինչպէս տեսանք*, 100*էն մինչեւ* 999, *բոլոր թիւերը կը կը գրուին երեք թուանշանով, այս թիւերուն կ'ըսուի* **երեք թուանշան ունեցող թիւեր**։

**Է. — Քանի՞ թուանշան պէտք է 100էն մինչեւ 999 թիւերը գրելու համար։**

**Վարժութ. — 12.** *Հետեւեալ խօսքերուն մէջ գտնուած թուանշանները գրով գրեցէք*։— *Մեր դպրոցին տարեկան հանդէսին* 140 *հոգի ներկայ էին. Մեր դպրոցին աղջիկներու կողմը* 98 *եւ մանչերու կողմը* 132 *աշակերտ կայ*։ *Մեր փողոցին մէջ* 13 *տուն կայ եւ՝ մեծ պզտիկ իրարու վրայ՝* 113 *բնակիչ*։ — **13.** *Թուանշանով գրեցէք հետեւեալ խօսքերուն մէջ գտնուած թիւերը*։ *Անցեալ տարի մեր քաղաքին մէջ*

հարիւր յիսուն պզտիկ երեխաներ մեռան ծաղկախտէ։ Այս տարի ալ երկու հարիւր եօթը մանուկներ հիւանդացան. առանցմէ հարիւր իննսունը ութը աղէկցան։ Երէկ ոչխարներու հօտ մը տեսայ, ուր հարիւր ութսունը վեց այծ եւ երկու հարիւր տասն երեք ոչխար կը գտնուէր։ Իմ գիրքս հարիւր տասն երկու երես ունի։

---

## 6. ԴԱՍ. — ԵՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐ

9. **Երրորդ կարգի միութիւն.** — Հարիւրաւորները երրորդ կարգի միութիւն կ'ըսուին, որովհետեւ հարիւրաւոր թիւը՝ աջ կողմէն համրելով՝ երրորդ կարգին վրայ կուգայ.

10. **Ի՞նչ կը ցուցնէ ամէն մէկ թիւը.** — Ուրեմն ո՛ր եւ է թիւի մէջ. աջ կողմի առաջին թիւը կը ցուցնէ միաւորները, անոր ձախ կողմի երկրորդ թիւը կը ցուցնէ տասնաւորները եւ երրորդ թիւը հարիւրաւորները։ Այսպէս, 125 թիւը կ'արժէ 1 հարիւրաւոր, 2 տասնաւոր. 5 միաւոր։— 703 թիւը կ'արժէ 7 հարիւրաւոր, 0 տասնաւոր, 3 միաւոր։

---

**9.** — Հարիւրաւոր թիւերուն կարգը ո՞րն է։ — **10.** — Երեք թուանշանով թիւի մը թուանշանները ի՞նչ կը ներկայացընեն։

---

**Վարժութ.** — **14.** Սա թիւերուն մէջ քանի՞ հատ առաջին կարգի, քանի՞ հատ երկրորդ կարգի և քանի՞ երրորդ կարգի միութիւններ կը գտնուին. 739, 825. 906, 576։ — **15.** Սա թիւերը զատեցէք հարիւրաւորներու, տասնաւորներու, միաւորներու. 275, 396, 408։ — **16.** Հետեւեալ խօսքերու պարունակած թիւերը գրով գրեցէք.—Սա պզտիկ կողովը կրնայ 165 խնձոր առնել. սա ծառին վրայ 215 տանձ

կրնայ գտնուիլ ։ — **17**. 1էն սկսած մինչեւ 101 բոլոր թիւերը 2 առ 2 գրեցէք ։

---

## 7. ԴԱՍ. — ՀԱԶԱՐԱՒՈՐՆԵՐԸ Ի՞ՆՉՊԷՍ ԿԸ ԿԱԶՄՈՒԻՆ

11. **Հազար.** — *Եթէ ինը հարիւր իննսունը իննին վրայ մէկ աւելցընենք, կ'ունենանք* **հազար** ։

12. **Հազարը կ'արժէ տասը հատ հարիւրաւոր.** — *999ը կը պարունակէ* 9 *հարիւրաւոր եւ* 99 *միաւոր. եթէ* 999*ին վրայ* 1 *աւելցընենք, տասը հատ տասնաւոր կ'ունենանք ։ Ուրեմն հազարը կ'արժէ* **տասը հարիւրաւոր** *եւ կը գրուի* 1000 ։

---

**11**. — Ի՞նչ թիւ կը ստացուի 999ին վրայ 1 աւելցընելով. — **12**. Հազարը քանի՞ հարիւրաւոր կ'ընէ ։

---

**Վարժութ.** — **18**. *Թուանշանով գրեցէք՝ երեք հարիւրաւոր, հինգ հարիւրաւոր, եօթ հարիւրաւոր ։* — **19**. *Սա թիւերը գրով գրեցէք,* 200. 400, 700, 800 ։ — **20**. *Հարիւրաւորներու, տասնաւորներու և միաւորներու բաժնեցէք* 365 *թիւը ։* **21**— . *Եօթը հարիւրաւորէ, հինգ տասնաւորէ եւ չորս միաւորէ կազմուած թիւը գրեցէք ։* — **22**. *Գրեցէք հինգ հարիւրաւորէ, մէկ տասնաւորէ եւ մէկ միաւորէ բաղկացած թիւը ։*

---

## 8. ԴԱՍ. — Ի՞ՆՉՊԷՍ ԿԸ ՀԱՄՐՈՒԻՆ ՀԱԶԱՐԱՒՈՐՆԵՐԸ

13. **Հազարաւորներն ի՞նչպէս կը համրուին.** — *Ինչպէս որ պարզ միութիւնները՝ նոյնպէս հազարաւորները կրնանք համրել ։*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Մէկ հազար կը գրուի | | 1000 | Եօթը հազար կը գրուի | | 7000 |
| Երկու հազար | » | 2000 | Ութը հազար | » | 8000 |
| Երեք հազար | » | 3000 | Ինը հազար | » | 9000 |
| Չորս հազար | » | 4000 | Տասը հազար | » | 10000 |
| Հինգ հազար | » | 5000 | Տասնը մէկ հազար | » | 11000 |
| Վեց հազար | » | 6000 | . . . . . . . . . . . . . . | | |

Եւ այսպէս մինչեւ ինը հարիւր իննսունը ինը հազար, որ կը գրուի 999,000։

**13.** — Ի՞նչպէս կը համրուի հազար թիւը․

**Վարժութ.** — **23**. *Հետեւեալ թիւերը գրով գրեցէք.— Ձեռք մը հագուստ կ'արժէ 150 ղրշ. ձեռք մը ճերմակեղէն կ'արժէ 47 ղրշ. 25 օխա խնձորը կ'արժէ 50 ղրշ. 100 տախտակը կ'արժէ 350 ղրշ՝ 65 Փէսը կ'արժէ 650 ղրշ. սա պարտէզին բոլոր պտուղները կ'արժեն 670 ղրշ. 5 ոչխարը կ'արժէ 275 ղրշ. 3 կովը կ'արժէ 896 ղրշ։*

## 9. ԴԱՍ. — ՉՈՐՐՈՐԴ ԿԱՐԳԻ ԹԻՒԵՐ

14. **Չորրորդ կարգի թիւեր.** — *Հազար ցուցընող թիւը չորրորդ կարգի թիւ է եւ աջ կողմէն համրելով չորրորդ կարգի վրայ կը գրուի։*

**14.** — Հազար ցուցընող թիւի մը միաւորին կարգը ո՞րն է։

**Վարժութ.** — **24**. *Ո՞րն է այն թիւը որ կազմուած է հինգ հազարաւորէ, երեք տասնաւորէ եւ ութը միաւորէ։* — **25**. *Հակառակէն համրեցէք 75էն մինչեւ 50։* — **26**. *Երեք առ երեք համրեցէք 1էն մինչեւ 99։* — **27**. *Թուանշանով գրեցէք 745էն 752, եւ 989էն 1000։* — **28**. *Սա թիւերը թուանշանով գրեցէք. հազար ութը, երեք հազար ինը, հինգ հազար եօթանասուն երկու, ինը հազար ինը։* — **29**.

*Հետեւեալ թիւերուն մէջ թուանշաններու կարգերը ցուցուցէք.* 754, 51, 451, 511, 752: — **30.** *Այս թիւերը գրով գրեցէք:* — **31.** *Հետեւեալ խօսքերու պարունակած թիւերը թուանշանով գրեցէք. Տարին սովորաբար երեք հարիւր վաթսունը հինգ օր ունի: Բայց կան տարիներ ալ որ երեք հարիւր վաթսունը վեց օր ունին:* — **32.** 451*էն մինչեւ* 510 *բոլոր թիւերը գրեցէք* 5 *առ* 5 *համրելով:*

---

## 10. ԴԱՍ. — 1000էն 9999

15. **Ի՞նչպէս կը հաշուենք հազարէն սկսեալ.** — *Հազարէն սկսեալ թիւերը կը հաշուենք* 1, 2, 3 *եայլն աւելցնելով հազարին վրայ:*

| | | | | |
|---|---|---|---|---|
| *Հազար մէկ կը գրուի* | | 1001 | *Երկու հզր. մէկ գրուի* | 2001 |
| *Հազար երկու* | » | 1002 | *Երկու հզր. երկու* » | 2002 |
| *Հազար երեք* | » | 1003 | . . . . . . . . . . | |
| *Հազար չորս* | » | 1004 | *Երեք հազար տասը* » | 3010 |
| *Հազար հինգ* | » | 1005 | *Երեք հզր. տասնը մէկ* | 3011 |
| . . . . . . . . . . | | | . . . . . . . . | (9.999) |

Եւ այսպէս կը շարունակուի մինչեւ ինը հազար ինը հարիւր իննսունը ինը, որ կը գրուի 9999:

---

**15.** — *Ի՞նչպէս համրելու ենք 1000էն սկսեալ:*

---

**Վարժութ.** — **33.** *Հետեւեալ թիւերը գրով գրել. Պերլինէն Բարիզ հեռաւորութիւնն է* 890 *քիլոմեթր:*—*Ս. Բեդրբուրկէն Բարիզ հեռաւորութիւնն է* 3050 *քիլմ.*—*Հռոմէն Բարիզ* 1,785 *քիլոմ.* —*Վիէննայէն Բարիզ* 1.400 *քիլոմ.* — *Կ. Պոլսէն Բարիզ* 2640 *քիլոմ.* — *Մատրիտէն Բարիզ* 1.050 *քիլոմ:*

## 11. ԴԱՍ. — ՀԻՆԳԵՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐ

16. **Տասը հազար.** — *Եթէ* ինը հազար ինը հարիւր իննսունըինը իննին *վրայ աւելցընենք* մէկ, *կ'ունենանք* տասը հազար (10,000)։

17. **Հինգերորդ կարգի միութիւն.** — *Տասը հազարաւոր թիւը հինգերորդ կարգի միութիւն է եւ կը դրուի հինգերորդ կարգի վրայ*։

---

**16.** — *Ի՞նչ թիւ կ'ունենանք 9999ին 1 աւելցընելով։* — **17.** — *Տասը հազարաւորներուն միաւորի կարգը ո՞րն է։*

---

**Վարժութ.** — **34.** *Համրեցէք* 7 *առ* 7 *սկսեալ* 1էն *մինչեւ* 70 (1, 7, 14, 21. ..) *եւ յետոյ հակառակ կողմէն*, 70էն *մինչեւ* 1։ **35.** *Թուանշանով գրեցէք չորս հազար չորս.—ութը հազար քառասունը եօթը. հինգ հազար քսանը ինը*։ — **36.** *Գրեցէք* 9125էն *մինչեւ* 9132։ — **37.** *Հետեւեալ թիւերու մէջ այլ և այլ կարգի միութիւնները ցուցնել.* 362, 2540, 1050, 270։ — **38.** *Հետեւեալ թիւերը գրով գրեցէք եւ այլ եւ այլ կարգի միութիւնները ցուցուցէք.* 1896, 6181, 2103, 3122։

---

## 12 ԴԱՍ. — ՎԵՑԵՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐ

18. **Տասը հազարի եւ հարիւր հազարի մէջտեղ գրուած թիւեր.** — Տասը հազարէն *մինչեւ* իննսունըինը հազար ինը հարիւր իննսունըինը *թիւերը կը գրուին հինգ թուանշանով*։ *Օրինակ, տասը հազար մէկ.* 10,001. *տասնըինը հազար ինը հարիւր իննսունըինը*, 19,999։ *Քսան հազար* 20,000 *եւ այսպէս մինչեւ* 99,999։

19. **Հարիւր հազար.** — 99,999*ին վրայ աւելցընենք* 1, *կ'ունենանք հարիւր հազար որ կը գրուի*՝ 100,000։

20. **Վեցերորդ կարգի միութիւններ.** — Հարիւր հազարաւոր *թիւերը վեցերորդ կարգի միութիւն կ'ըսուին, որովհետեւ վեցերորդ կարգի վրայ կը դրուին։*

---

**18.** — Քանի՞ թուանշան պէտք է՝ 10,000էն մինչեւ 99,999 թիւը գրելու համար։ — **19.** — Ի՞նչ թիւ կ'ունենանք երբ 1 աւելցընենք 99,999ին վրայ։ — **20.** — Հարիւր հազարաւոր թիւի միութիւններուն կարգը ո՞րն է։

---

**Վարժութ.** — **39.** *Գրեցէք* 37238էն *մինչեւ* 37278։ — **40.** *Հակառակէն համրեցէք* 67293էն 67272։ — **41.** *Հետեւեալ թիւերը գրով գրեցէք*, 2863, 36056։ — **42.** *Հետեւեալ թիւերու մէջ թուանշաններու կարգը ցուցուցէք*, 2863, 3682. 36056, 65063։

---

## 13. ԴԱՍ. — ԵՕԹՆԵՐՈՐԴ ԿԱՐԳԻ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐ

21. **Միլիոն.** — *Եթէ ինը հարիւր իննսունը ինը հազար ինը հարիւր իննսուն իննին վրայ աւելցընենք մէկ, կը ստանանք* միլիոն *թիւը որ կը գրուի* 1,000,000։

22. **Եօթներորդ կարգի միութիւններ.** — *Միլիոնը եօթներորդ կարգի միութիւն է։ Միլիոններն ալ միաւոր եւ հազարաւոր թիւերու պէս կը համրուին։ Բայց մինչեւ հոս բաւ է ինչ որ խօսեցանք թիւերու վրայ։*

---

**21.** — Ի՞նչ թիւ կ'ունենանք 999,999ին վրայ 1 աւելցընելով։ — **22.** — Միլիոնները ի՞նչ կարգի միութիւններ են։

---

**Վարժութ.** — **43.** *Հետեւեալ թիւերը գրով գրեցէք.* — *Կ. Պոլիս եթէ ոչ* 1,000,000 *գոնէ* 999,000 *բնակիչ ունի անպատճառ։* — **44.** *Ֆրանսա տարին* 7,453.714 *քիլօ մեղր կ'արտադրէ եւ ունի* 1,592.929 *փեթակ, այս մեղրը կ'արժէ* 10,619,073 *ֆրանք։* — **45.** *Գրեցէք* 673,497էն *մինչեւ* 673,508 *բոլոր թիւերը։*

## 14. ԴԱՍ. — ՄԻՈՒԹԵԱՆ ԱՑԼ ԵՒ ԱՑԼ ԿԱՐԳԵՐԸ

**22. Որ եւ է թիւի մէջ ամէն մէկ թուանշան ի՞նչ կը ցուցնէ.** — *Արդէն տեսանք թէ (Դաս 6) երեք թուանշանէ բաղկացած թիւ մը ի՞նչպէս կը կարդացուի։ Ուրեմն դժուար չէ այդ կերպով որ եւ է թիւ կարդալ։ Այսպէս, որ եւ է թիւի մէջ, աջ կողմէն սկսած*

| | | | | |
|---|---|---|---|---|
| Առաջին թիւը | կը ներկայացընէ | պարզ միաւորներ | [1ին կարգ] | |
| Երկրորդ | » | » տասնաւորներ | [2րդ | » |
| Երրորդ | » | » հարիւրաւորներ | [3րդ | » |
| Չորրորդ | » | » հազարաւորներ | [4րդ | » |
| Հինգերորդ | » | » տասը հազարաւոր. | [5րդ | » |
| Վեցերորդ | » | » հարիւր հազարաւոր | [6րդ | » |
| Եօթներորդ | » | » միլիոնաւորներ | [7րդ | » |

. . . . . . . . . . . . . . . .

*Առնենք հիմա եօթը թուանշանէ բաղկացած որ եւ է թիւ եւ թուանշաններու կարգը ցուցընենք։*

9 6 2 4 8 7 5

9 միլիոնաւոր
6 հարիւր հազարաւոր
2 տասը հազարաւոր
4 հազարաւոր
8 հարիւրաւոր
7 տասնաւոր
5 միաւոր

---

**23.** — Ըսէ՛ք՝ ի՞նչ կարգ կը ներկայացընէ եօթը թուանշան ունեցող թիւի մը ամէն մէկը։

---

**Վարժութ.** — **46.** *Սա* 31,645 *թիւէն առաջ եւ ետ գտնուած տասը թիւերը գրաւոր կերպով գրեցէք։* — **47.** *Հետեւեալ թիւերուն մէջ գտնուած թուա-*

*նշաններըը իրենց կարգերուն բաժնեցէք.* 19. 621. 360,425. 584,819. 3,406,843. 35,916,617։ — **48.** *Հետեւեալ թիւերը դրով գրեցէք և ցուցուցէք թուանշաններուն կարգը.* 76,419,327. 15,282,774. 411,632, 6,991. 449,122,469,207։

---

15 ԴԱՍ. — ՄԻԱՒՈՐՆԵՐՈՒՆ ԴԱՍԱԿԱՐԳԸ

**24.** Ո՛ր եւ է թիւ ինչպէ՞ս կը կարդացուի. — *Ընթադրենք թէ* 9624875 *թիւը կարդալ պէտք է։ Նախ աջ կողմէն սկսելով պէտք է այս թիւը երեք առ երեք բաժնել ստորակէտով մը* 9,624.875։

25. — *Աջ կողմի առաջին հատուածը կը բաղկանայ միաւոր, տասնաւոր և հարիւրաւոր թիւերէ, և կը պարունակէ* պարզ միաւորներու դասակարգը։

26. — *Երկրորդ հատուածը կը պարունակէ հազարաւոր, տասը հազարաւոր եւ հարիւր հազարաւոր թիւեր, որոնց կ'ըսուի* հազարաւորներու դասակարգ։

27. — *Երրորդ հատուածը կը պարունակէ միլիոնաւորներու դասակարգը։ Ամէնէն վերջին հատուածը կրնայ ունենալ մէկ թուանշան կամ երկու և կամ երեք, ըսել է թէ ամէն մէկ դասակարգը կը պարունակէ երեք թուանշան։*

28. — *Հիմա. թիւը այսպէս բաժնելէ յետոյ, ձախ կողմէն սկսեալ կը կարդանք առանձին առանձին՝ ամէն մէկ դասակարգը իր անունով։ Ուրեմն վերի թիւը կը կարդանք* 9 *միլիոն* 624 *հազար* 875։

---

**24.** — Երեքէն աւելի թուանշան ունեցող թիւ մը ի՞նչպէս կը կարդացուի։ — **25.** — Առաջին հատուածը ինչէ՞ կը բաղկանայ։ — **26.** — Իսկ երկրո՞րդը։ — **27.** Իսկ երրո՞րդ հատուածը։ — **28.** Երեքական զատուած թուանշանը ի՞նչպէս կը կարդացուի։

Վարժութ. — **49**. *Գրով գրեցէք սա թիւերը.* 360,425. 584,819. 3,406,843։ — **50**. *Գրով գրեցէք Վիէննա* 1,021,000 *բնակիչ ունի։ — Լոնտոն՝* 3,670,000։— **51**. *Գրով գրեցէք հետեւեալ թիւերը* 478,908. 456,789. 3,600,457. 709,874. 987,654. 6,540,013։— **52**. *Հետեւեալ թիւերը թուանշանով գրեցէք։ Եօթը միլիոն, երկու հարիւր ութսունը վեց հազար, երկու հարիւր եօթը։—Եօթը միլիոն. քսանը մէկ հազար, ինը հարիւր քսանը եօթը։—Վեց միլիոն, վեց հազար վեց։—Երեք միլիոն երեսուն երեք։—Հինգ հարիւր յիսունը հինգ հազար երեք հարիւր երեսուն երեք։*

## 16 ԴԱՍ. — ԹԻՒ ՄԸ ԳՐԵԼՈՒ ԿԵՐՊԸ

29. **Թիւ մը ի՛նչպէս կը գրուի բառանշանով.** — *Հիմա ո՛ր և է թիւ ըսենք. օրինակ, քառասուն երկու* հազար *ութ հարիւր երեսունը հինգ։ Այս թիւին անունը տալով արդէն զանի բաժնած կ՚ըլլանք իր այլ և այլ դասակարգերուն, այսինքն հազարաւորներու եւ պարզ միաւորներու։ Այսպէս ալ, երբ կ՚ըսենք երեսունը հինգ* միլիոն *երկու հարիւր քառասունը եօթը* հազար *վեց հարիւր քսան երեք, այս թիւը բաժնած կ՚ըլլանք միլիոնաւոր, հազարաւոր և պարզ միաւորներու։*

30. — *Ուրեմն թիւը գրելու համար, սկսելու է ձախ կողմէն եւ կարգով ամէն մէկ դասակարգը իրարու ետեւէ շարելու է։ Այսպէս՝ Քառասուն երկու* հազար *ութ հարիւր երեսունը հինգը կը գրուի.* 42,835. *Երեսունը հինգ* միլիոն *երկու հարիւր քառասունը եօթը* հազար *վեց հարիւր քսան երեքը կը գրուի* 35,247,623։

**29**. — Թիւ մը զրուցելով՝ ի՞նչ ըրած կ՚ըլլանք։— **30**. — Թիւ մը Թուանշանով գրելու համար ի՞նչ ընելու է։

*Վարժութ.* — **53.** *Գրով գրեցէք.* 48,532 *խնձոր,* 76,829 *քար.* 654,972 *տանձ։* — **54.** *Վեց երկոտասանեակ մոմը քանի՞ հատ կ'ընէ։* — **55.** *Քանի՞ հատ կ'ընէ հազար երեք միութիւն։* — **56.** *Հետեւեալ խօսքերու մէջ գտնուած թիւերը թուանշանով գրեցէք։ Տուն մը շինելու համար պէտք եղաւ տասնը չորս հազար եօթը հարիւր քսանը ութ աղիւս և ութ հազար եօթը հարիւր քսանը ութ կղմինտր։* — **57.** *Հարինգ ձուկը երեսունը հինգ հազար հաւկիթ ունի։ Լեզուաձուկ մը հարիւր հազար, ծածան մը հինգ հարիւր հազար, վահանաձուկ մը եօթը միլիոն, մօրիւ մը տասնը մէկ միլիոն յիսուն հազար։*

**58.** *Ի՞նչ միութիւններ կը գտնուին* 3,128,548 *թուանշանին մէջ։* — **59.** *Հետեւեալ թուանշանները գրով գրեցէք եւ ցուցուցէք թէ ի՞նչ միութիւններ կը գտնուին անոնց մէջը.—Նեղոս գետը* 4,200,000 *մէթր երկարութիւն ունի. Սէն գետը* 630.000 *մէթր. Միսիսիբի գետը* 6,590,000 ։ — **60.** *Հետեւեալ թուանշանները գրով գրեցէք. Ֆրանսայի մէջ* 2,807,043 *ձի կայ.* 218,762 *ջորի.* 359,879 *էշ.* 1,798,240 *եզ.* 6,229,436 *կով.* 20,721,850 *ոչխար.* 6,038,372 *խոզ.* 1,484,921 *այծ։* — **61.** *Հետեւեալ թիւերը թուանշանով գրեցէք. Ութ միլիոն հինգ հարիւր հազար օխա գետնախնձոր. Երկու հարիւր իննսունը հինգ հազար եօթ հարիւր վաթսուն քիլէ ցորեն։*

---

## 17 ԴԱՍ. — ԹԻՒ ՄԸ ԳՐՈՒԼՈՒ ԿԵՐՊԸ [Շար.]

31. **Երբ թիւի մը մէջ թուանշան պակսի, տեղը զէրօ կը դրուի.**— *Թիւ մը ըսած ատեննիս, կրնայ ըլլալ որ ամբողջ կարգ մը կամ մէկ երկու թիւեր պակսին, այն ատեն անոնց տեղ զէրօ կը դրուի։ Օրինակ՝* **վեց հարիւր երսուն** *թիւը կը գրուի* 630, *այնպէս որ պակսած միաւորին տեղ զէրօ կը գրուի։* **Երեք հազար**

Երկու հարիւր եօթը թիւը կը գրուի 3207 . Հոս զէրօն կը բռնէ տասնաւոր թուանշանին տեղը։ Երեք միլիոն երկու հարիւր եօթը թիւը կը գրուի 3,000,207 . այս թուանշանին մէջ տասնաւորը եւ հազարաւորներուն ամբողջ կարգը զէրօյով նշանակուած են։

---

**31.** — Ի՞նչ ընելու է երբ թիւի մը մէկ կամ մէկ քանի կարգերը պակաս ըլլան։

---

Վարժութ. — **62.** Թուանշանով գրեցէք. Հինգ հազար վեց հարիւր երեք. Տասը հազար եօթը հարիւր քառասունը հինգ. Հարիւր հազար չորս հարիւր եօթանասունը հինգ։ — **63.** Թուանշանով գրեցէք. Վեց հարիւր յիսունը չորս հազար ինը հարիւր եօթանասուն երկու։ Մէկ միլիոն հինգ հարիւր տասնը ութ հազար ինը։ Տասն երկու միլիոն տասնը ութ հազար ինը։ — **64.** Գրով գրեցէք. 471,632. 584,819. 790,697։

---

## 18 ԴԱՍ. — ՎԱՐԺՈՒԹԻՒՆՆԵՐ

Վարժութ. **65.** Հակառակէն համրեցէք 7.928էն 7.913։ — **66.** Քանի՞ կարգի միութիւն կայ 9753125 թուանշանին մէջ։ — **67.** Երկու առ երկու գրեցէք 32էն մինչեւ 64։ — **68.** 3 առ երեք գրեցէք 729էն 813։ — **69.** Գրով գրեցէք 131. 1313. 13131. 131313. 121314. 998877. 17170։ — **70.** Սա նախորդ թիւերուն մէջ ամէն մէկ թուանշանը ի՞նչ կարգի միութիւն կը ցուցնէ, ըսէ՛ք։ — **71.** 5 առ 5 գրեցէք բոլոր թիւերը 19.857էն մինչեւ 19.902։ — **72.** Հետեւեալ թիւերը գրով գրեցէք. — Եօթը հարիւր ութսուն երեք. Չորս հազար եօթը հարիւր ութսուն. Երեսունը եօթը հազար երսունը հինգ. Յիսուն հազար հինգ հարիւր հինգ։ Եօթը հարիւր հազար չորս հարիւր քըսանը եօթը։ — **73.** Սա թիւը 123456789 գրով գըրեցէք եւ յետոյ մի և նոյն թիւը հակառակ կողմէն

*գրեցէք թէ՛ թուանշանով, թէ՛ գրով։* **14**. *Այդ երկու թիւերուն մէջ գտնուած բոլոր թուանշաններու կարգը ցուցուցէ՛ք։*

**15**. *Հետեւեալ խօսքերը ամբողջացուցէք կէտերուն տեղ դնելով այն թիւերը որ պէտք են. — Հարիւրաւոր մը ներկայացնելու համար պէտք է ... թուանշան. միլիոն մը ներկայացնելու համար պէտք է ... թուանշան. հարիւր միլիոն ներկայացնելու համար պէտք է ... թուանշան. տասը հազարաւորի համար պէտք է ... թուանշան. տասնաւորի համար պէտք է ... թուանշան։*

---

## 19. ԴԱՍ. — 1—15 ԴԱՍԵՐՈՒ ԱՄՓՈՓՈՒՄ

**Հարիւրէն մինչեւ մէկ միլիոն.** (1—22). 10 *տասնաւոր կ'արժէ հարիւր կամ մէկ հարիւրաւոր.* 10 *հարիւրաւորը կ'արժէ հազար կամ հազարաւոր մը. Տասը հազարը կ'արժէ մէկ տասը հազարաւոր. տասը հատ հարիւր հազարաւորը կ'արժէ մէկ միլիոն, եւ այսպէս շարունակ։ — Ըսել է թէ որ եւ է կարգի միութիւն, եթէ տասն անգամ ինք իր վրայ աւելցնես, յաջորդ կարգի միութիւնը կուտայ։*

100*էն մինչեւ* 999 *բոլոր թիւերը կը գրուին երեք թուանշանով.* 1000*էն մինչ* 9999 *կը գրուին չորս թըւանշանով եւ այսպէս կը շարունակուի։*

**Թուանշանները եւ իրենց կարգերը** (23-28). —*Միաւորները, տասնաւորները եւ հարիւրաւորները կը կազմեն պարզ միաւորներու կարգը։ Հազարը, տասը հազարը եւ հարիւր հազարը կը կազմեն հազարաւորներու կարգը։ Միլիոնը, տասը միլիոնը եւ հարիւր միլիոնը կը կը կազմեն միլիոնաւորներու կարգը։*

**Վարժուք.** — **76.** *Եթէ երեք թուանշանէ բաղկացած թիւ մը 5ով սկսինք, ո՞րն է ամենամեծ թիւը ։* — **77.** *Եօթը թուանշանով թիւի մը մէջ ո՞րն է ամենէն մեծը եթէ 3ով վերջանայ ։* — **78.** *Հինգ թուանշանով ամենէն փոքր թիւը ո՞րն է եթէ 9ով վերջանայ.*

---

## 20 ԴԱՍ. — 16 – 17 ԴԱՍԵՐՈՒ ԱՄՓՈՓՈՒՄ

**Թիւ մը թուանշանով գրելու եւ կարդալու կերպը** (29—31). — *Թիւ մը կարդալու համար, նախ՝ աջ կողմէն սկսած՝ երեք առ երեք կը բաժնենք զայն ։ Յետոյ ձախ կողմէն սկսած՝ ամէն մէկ հատուածը առանձին առանձին կարդալու է, ինչպէս պիտի կարդայինք եթէ առնք մինակ ըլլային ։*

*Թիւ մը գրելու համար ձախ կողմէն կըսկսինք եւ թուանշաններու անունները կարգով կը շարենք՝ պակսած թիւերուն տեղ զերօ դնելով ։*

*Թուանշան մը գրելու եւ կարդալու կերպը մէկ խօսքով* թուում *կ'ըսուի ։*

**Թուումի համառօտ ցուցակ**

| | | |
|---|---|---|
| **Ա. դասակարգ Միաւորներ** | *Ա. կարգ* | *—պարզ միութիւններ* |
| | *Բ. »* | *—տասնաւորներ* |
| | *Գ. »* | *—Հարիւրաւորներ* |
| **Բ. դասակարգ Հազարաւորներ** | *Դ. կարգ* | *—Հազաւորներ* |
| | *Ե. »* | *—տասը Հազարաւորներ* |
| | *Զ. »* | *—Հարիւր Հազարաւորներ* |
| **Գ. դասակարգ Միլիոնաւորներ** | *Է. կարգ* | *—միլիոնաւորներ* |
| | *Ը. »* | *—տասը միլիոնաւորներ* |
| | . . . | . . . . . . . . . . . |

---

**Վարժուք.** — **79.** *Թիւով գրեցէք* 3406843, 9624875 — **80.** *Երկու Հարիւրաւոր եւ մէկ տասնաւոր քանի՞ Հատ կ'ընեն. իսկ վեց Հարիւրաւոր չորս տասնաւո՞ր ։* — **81.** *Չորս թուանշանով ամենամեծ թիւը ո՞րն է ։*



# ՆԱԽՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## 1 ԴԱՍ. — Ի՞ՆՉՊԷՍ ԿԸ ԶԳԱՆՔ

**1. Զգայութիւն.** — *Երբ մատերնիս ճրագին բոցին մօտեցընենք, կը զգանք որ մեր մորթը կ'այրի. երբ մեր արմուկը գրասեղանին վրայ դնենք, դիմադրութիւն մը կը զգանք։ Երկու պարագայի մէջ ալ* զգայութիւն *մը կրենք։ Հիմա պէտք է գիտնալ թէ մեր մարմնին ո՞ր մասերը այս զգայութիւնը կ'իմանան։*



Պատ. 6. — Ջղային դրութիւն. Ո. Ուղեղ. ՈՂ. Ողնուղեղ. ՋՋ. Ջիղեր։

**2. Ջիղեր, Ողնուղեղ, Ուղեղ.** — *Ամենաբարակ ճերմակ թելեր կան, որ շնչերակներու և երակներու քովերէն ամբողջ մարմնին մէջ տարածուած են և որոնց* ջիղ *կ'ըսուի* [Պատկ. 6, Ջ. Ջ.] *ա-ւասիկ այս ջիղերն են որ զգայութիւնները կ'ընդունին։ Գրեթէ բոլոր ջիղերը կուգան իրարու կը միանան չուանի մը պէս երկար՝ սպիտակ ծուծի մը վրայ։ Այս երկար սպիտակ ծուծը ողնայարին մէջ է* [Պատ. 6, *ՈՂ*] *և կը կոչուի* ողնուղեղ։

**3. Ուղեղ.** — *Ողնուղեղին վերի մասը խոշոր զանգուած մըն է, դրուած է գանկին մէջ և կը կոչուի* Ուղեղ [Պատ. 6, *Ո*]։ *Ջիղերը և ողնուղեղը իրենց ընդունած բոլոր զգայութիւնները կ'իմացընեն ուղեղին։ Ըսել է թէ մեր մարմինը ինչ որ զգայ, ուղեղն է որ կը հասկընայ անոր բոլոր զգացածները։*

*Ասկէ զատ, ուղեղն է որ հրաման կ'ընէ որ մենք* շարժումներ *ընենք՝ օրինակ, ձեռքերնիս վեր վեր-*

ցընենք, քալենք, վազենք, խաղանք։ Ուղեղը, ողնուղեղը և բոլոր ջիղերը միասին կը կազմեն ջղային դրութիւնը։

1. Զգայութեան օրինակներ տուէք։ — 2. Ի՞նչ է ջիղը, ի՞նչ է ողնուղեղը կամ ծուծը։ — 3. Ի՞նչ է ուղեղը. ինչի՞ կը ծառայէ ուղեղը։ Ի՞նչ է ջղային դրութիւնը։

## 2. ԴԱՍ. — ՏԵՍՈՂՈՒԹԻՒՆ.

**4. Հինգ զգայարանները.** — *Մենք կրնանք տեսնել մեզ շրջապատող բաները, կրնանք ձայներ լսել, հոտ առնել, կերակուրներ ճաշակել, առարկաներ շօշափել։ Այս այլեւայլ զգայութիւնները կը կոչուին* հինգ զգայարաններ։ 1. Տեսողութիւնը *որով առարկաները կը տեսնենք։* 2. Լսողութիւնը *որով ձայները կը լսենք։* 3. Հոտառութիւնը *որով հոտ կ'առնենք։* 4. Ճաշակելիքը *որով մեր կերած բաներուն աղէկ կամ գէշ համը կ'իմանանք։* 5. Շօշափելիքը *որով կը հասկընանք առարկաներու ձևը, անոնց որչափ կարծր կամ կակուղ, տաք կամ պաղ ըլլալը։*

**5. Աչքերը.** — *Տեսողութեան գործարանը աչքն է։ Առջեւի կողմէն դիտենք* աչք *մը, կը տեսնենք որ անի պզտիկ գնտակի մը կը նմանի և կը շարժի վեր վար, աջ ու ձախ,* կոպերուն *ներքեւ։ Աչքին մէջ կը տեսնենք սպիտակ մաս մը* [Պատ. 7, Ս], *ասոր կ'ըսուի* աչքի սպիտակուց։ *Այս սպիտակուցին մէջտեղ կը գտնուի կլորաձեւ մաս մը որ թուխ, կապոյտ կամ գորշ գոյն ունի. այս գունաւոր մասին կ'ըսուի* ծիածան [Պատ. 7, Ծ]։ *Իսկ ծիածանին կեդրոնը կը գտնուի ուրիշ պզտիկ կլորաձեւ մըն ալ որ կը կոչուի* Բիբ [Պատ. 7, Բ.]։




Պատկ. 7. — Աչքը առջեւի կողմէն դիտելով։ Ս. Սպիտակուց աչքի. Ծ. Ծիածան. Բ. Բիբ։

**Զ. Տեսողութիւնը.** — Լոյսը բիբին մէջէն կ'անցնի և աչքին ներսը կը մտնէ։ Աչքին ներսի կողմը կը գտնուի խոշոր ջիղ մը, տեսողական ջիղ անունով։ Դրսի առարկաներու լոյսը բիբէն ներս կը մտնէ և կը հասնի տեսողական ջիղին. այս ջիղն ալ առարկաներու տպաւորութիւնը, այսինքն աչքին տեսածը կ'իմացընէ ուղեղին ։

---

4. Որո՞նք են հինգ զգայարանները։ — 5. Ի՞նչ է կոպը։ Ի՞նչ է Թարթիչքը։ Աչքին մէջ ի՞նչ կը տեսնուի։ — 6. Լոյսը ուսկի՞ց կը մտնէ աչքին մէջ։ Ո՞ր ջիղը ուղեղին կը տանի լոյսին տպաւորութիւնը։

---

## 3. ԴԱՍ. — ԼՍՈՂՈՒԹԻՒՆ, ՃԱՇԱԿԵԼԻՔ, ՀՈՏԱՌՈՒԹԻՒՆ, ՇՕՇԱՓԵԼԻՔ.

**Է. Ականջներ.** — Լսողութեան գործարանը ականջն է։ Եթէ ականջի մը դրսի մասը դիտենք, կը տեսնենք որ անի կազմուած է ինք իր վրայ ծալլուած և մէջը ծակ մսի կտորէ մը։ Աս՝ դրսէն երեւցող մսի կտորը կը կոչուի ականջի բաւիղ։ Իսկ անոր մէջտեղի ծակը, որ ներս կ'երթայ, կ'ըսուի ականջի արտաքին խողովակ։ Այս խողովակին ներսի կողմը կը գտնուի շատ բարակուկ մորթ մը, որ թմբուկի մը մորթին պէս ձգտուած է, ասոր կ'ըսուի ականջի թմբուկ։

**Ը. Լսողութիւն.** — Բաւիղը կը ժողվէ դրսէն եկած ձայները և արտաքին խողովակին միջոցաւ կը ղրկէ ներս, այն ատեն աս ձայները կը հանդիպին թմբուկին և կը թրթռացընեն զայն։ Այս կերպով ձայները կը հասնին ականջին խորերը ուր կը գտնուի լսողական ջիղը որ իր իմացած ձայներու տպաւորութիւնը կը տանի ուղեղին կ'իմացընէ։

**Թ. Լեզու. — Ճաշակելիք.** — Լեզուն ճաշակելիքի

գործարանն է։ Լեզուին վրայ երբ նայիք, պզտիկ ցցուածքներ կը տեսնէք։ Ջիղերու բարակ թելերուն ծայրերը այս ցցուածներուն մէջ կը գտնուին. անոնք համի տպաւորութիւնը կ'առնեն կը տանին ուղեղին։

**10. Շօշափելիք.** — Իրաւ է որ մեր մարմնի բոլոր մասերը, այսինքն ամբողջ մորթը կրնայ շօշափել և զգալ, բայց ամենէն շատ զգայուն են մատերուն ծայրերը։ Ասկէ զատ, մեր մորթին ամէն տեղերը հաւասարապէս զգայուն չեն։ Մատի մը ծայրով աւելի աղէկ կը հասկընանք թէ զմելինի մը բերանը սուր է, քան թէ այն մատի ետեւի կողմովը։

---

7. Ի՞նչ է ականջին բաւիղը. Ի՞նչ է ականջի արտաքին խողովակը. Ի՞նչ է Թմբուկը։ — 8. Ո՞ր ջիղին միջոցաւ ձայնի տպաւորութիւնը ուղեղին կը հասնի. — 9. Ճաշակելիքի գործարանը ո՞րն է։ — 10. Շօշափելիքը մասնաւոր գործարան ունի՞։

---

## 4. ԴԱՍ. — ՈՒՏԵԼՈՒ ԵՒ ԽՄԵԼՈՒ ԿԱՆՈՆՆԵՐ

**11. Առողջապահութիւն. Վտանգաւոր ըմպելիներ.** — Առողջ ապրելու համար շատ մը կանոններ կան, որոնց պէտք է հետեւինք։ Այս կանոնները ամէնը մէկտեղ Առողջաբանութիւնը կը կազմեն։ Տղաքները պէտք չէ որ խմեն՝ ո՛չ օղի, ո՛չ ուրիշ ոգելից ըմպելի. ո՛չ ալ շատ գինի։ Մեծ մարդիկ, եթէ շատ գործածեն այս ըմպելիները, կը վնասուին. իսկ տղաքներուն համար անոնց մէկ կաթիլն անգամ վտանգաւոր է. անոնք ստամոքսը և աղիքները կ'աւրեն։ Օղին և ուրիշ ոգելից ըմպելիներ ուղեղին ալ վնաս կ'ուտան։

**12. Ուտելու համար կանոն.** — Հացի կամ մսի կտոր մը որչափ աղէկ ծամուի, այնքան դիւրաւ կը մարսուի, ուրեմն **պէտք չէ շուտ շուտ ուտել**։ Որչափ

կամաց ունենք, ա՛յնքան աւելի աղէկ կը մարսենք։

**13.** Կերակուրը ուտելէ անմիջապէս յետոյ չի վերջանար մարսողութիւնը. ան կը շարունակուի դեռ ատեն մըն ալ։ Ուրեմն, հաց ուտելէ անմիջապէս յետոյ պէտք չէ աշխատիլ, մանաւանդ պէտք չէ լողանք ընել՝ ծովի կամ գետի ջուրերու մէջ կամ տունը։ Աւելի աղէկ է ընկերներու հետ պտտիլ կամ խաղ մը խաղալ։

**14.** **Ակռաներու համար խնամք.** — Քանի որ ակռաները պէտք է աղէկ ծամեն որ կերակուրը դիւրաւ մարսուի, ուրեմն շատ կարեւոր է խնամք տանիլ ակռաներուն։ Պէտք է ամէն առաւօտ լուացուած ժամանակ, կակուղ՝ ակռայի վրձինով մը վերէն վար, աջ ու ձախ շփշփել զանոնք և ջրով լուալ։ Ակռաները երբ անխնամ թողուին, հիւանդ կ'ըլլան. անոնց ներքեւ գտնուող ջիղերը կը սկսին սաստիկ ցաւիլ եւ ակռաները կը սկսին փտիլ։ Պէտք չէ բնաւ ակռաներով կարծր բաներ կոտրտել, որովհետեւ ակռան իր տեղէն կը խախտի, շատ անգամ կը կոտրի և կը սկսի փտիլ ու սոսկալի ցաւ պատճառել։

---

**11.** Ի՞նչ է առողջապահութիւնը։ Ինչո՞ւ համար օղի կամ ուրիշ ոգելից ըմպելի խմելու չէ։ — **12.** Ինչո՞ւ ծանր ուտելու է։ — **13.** Ճաշէն վերջը աշխատելո՞ւ է։ Ճաշէն վերջը լողանք ընելո՞ւ է։ — **14.** Ինչո՞ւ համար ակռաները խնամել պէտք է։

---

## 5. ԴԱՍ. — ՄԱՔՈՒՐ ՕԴ ՇՆՉԵԼՈՒ ԿԱՆՈՆՆԵՐ

**15.** **Պէտք է մաքուր օդ շնչել.** — 1. Պէտք է միշտ մաքուր օդ շնչել, որպէս զի շնչառութիւնը կանոնաւորապէս կատարուի։ Դուրսի օդը սովորաբար մաքուր է, բայց երբ սենեակի մը մէջ շատ մը անձեր կը նըս-

տին ու սենեակին պատուհանները գոց են, բերնէն ելած օդը, որ աղէկ չէ, սենեակին օդը կ'ապականէ։

2. *Ուրեմն սենեակներու օդը միշտ* նորոգելու է։ *Ձմեռ ատեն, երբ սենեակին մէջ վառարան կը վառի, սենեակի օդը վառարանի պզտիկ դռնէն միշտ ներս կը մտնէ՝ կրակը արծարծելու համար և ծուխին հետ դուրս կ'ելլէ, միւս կողմէ պատուհաններու և դռներու ճեղքերէն դրսի օդը ներս կը մտնէ։ Բայց եթէ սենեակը չափազանց տաքնայ, պէտք է երբեմն դուռը կամ պատուհանը բանալ և զովացընել զայն. այս կերպով նոր ու մաքուր օդ ներս կը մտնէ։*

**16**. Այն վառարանները, որ աղէկ ծուխ չեն քաշեր, վտանգաւոր են.— 1. *Երբ վառարանը աղէկ կը քաշէ ծուխը, պատուական կերպով կը վառի և միշտ կը նորոգէ սենեակին օդը. բայց երբ աղէկ չի քաշեր ծուխը, ի՞նչ կ'ըլլայ: — Այն ատեն ո՛չ միայն սենեակին օդը չի նորոգուիր, այլ ածուխին կամ փայտին ծուխը սենեակին մէջ կը լեցուի, և սաստիկ վտանգաւոր կ'ընէ զայն։*

2. *Ուրեմն վառարան վառող մը ի՞նչպէս կրնայ ճանչնալ թէ վառարանը մուխը աղէկ կը քաշէ՞ թէ ոչ։ — Աս բանը շատ դիւրին է. երբ վառարանը սկսած է բոցբոցիլ, լուցկի մը վառեցէ՛ք և մօտեցուցէ՛ք պզտիկ դռնակին, եթէ լուցկիին բոցը ծռեցաւ դէպի դռնակը ու նոյն իսկ եթէ լուցկին մարեցաւ, ըսել է թէ վառարանին մէջ օդի աղէկ հոսանք կը մտնէ եւ մուխը լաւ կը քաշուի, իսկ եթէ լուցկիին բոցը անշարժ մնայ, ըսել է թէ վառարանը աղէկ չի քաշեր, կը մխայ։*

---

**15**. 1. Թոքերուն արտաշնչած օդը շնչառութեան յարմա՞ր

է։ 2. Սենեակի մը օդը ի՞նչպէս կը նորոգուի։ — **16.** 1. Ծուխը աղէկ չքաշող ջերմոցները ինչո՞ւ վտանգաւոր են։ 2. Ի՞նչպէս կը հասկցուի թէ ջերմոց մը աղէկ կը քաշէ ծուխը։

---

## 6. ԴԱՍ. — ՈՒՂԻՂ ԿԵՆԱԼՈՒ ԵՒ ՇԱՐԺՈՒՄՆԵՐ ԸՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԿԱՆՈՆՆԵՐ

**17. Մարմինը ուղիղ դիրքի մէջ պահել.** — 1. *Երիտասարդներ կան որ կը կաղան կամ կորացած մէջք ունին, ծերունիներու պէս. գիտէ՞ք, շատ անգամ ի՛նչ է պատճառը. — Պարզապէս մանկութեան ատեն իրենց մարմինը գէշ դիրքի մէջ պահած են, ա՛յս է պատճառը։ Շատերը գէշ սովորութիւն ունին որ կարդացած կամ գրած ժամանակնին, իրենց մարմինը աղէկ դիրքի մէջ չեն պահեր։* Պէտք է մէջքը ուղիղ պահել եւ գլուխը շատ չծռել։ *Ո՞վ չի հասկնար այս բանը։ Մարդ մը պզտիկ եղած ատեն, իր ոսկորները փափուկ են ու օրը օրին կը մեծնան. երբ մարմնի մէկ մասը շարունակ գէշ դիրքի մէջ գտնուի, ոսկորներն ալ այն կերպով կը մեծնան եւ մարմինը տձեւ կ՚ըլլայ։ 2. Քալելու ատեն ալ պէտք է ուղիղ կենալ եւ գլուխը վար չկախել։*

**18. Խաղալու օգտակարութիւնը.** — 1. *Արիւնին շրջանը դիւրացընելու համար պէտք է երբեմն երբեմն վազվզել, խաղալ։ Երկար ատեն անշարժ մնալը աղէկ չէ։*

2. *Մանաւանդ տղաքները աւելի պէտք է շարժին, վազվզեն, խաղան. տղայի մը համար շատ գէշ է այնպէս անշարժ՝ գամուած մնալ, շարունակ նստիլ։*

**19. Մարմնամարզ.** — *Տղայ մը աղէկ պայմաններու մէջ մեծնալու, զօրաւոր եւ առողջ մարմին մը ունենալու համար պէտք է որ շատ անգամ մարմնամարզ*

ընէ։ Մարմնամարզի միջոցաւ կանոնաւոր կերպով կը շարժենք մեր մարմնի բոլոր անդամները՝ առանց շատ յոգնելու։ Տղաքները աւելի շուտ կը մեծնան և զօրաւոր ոտք ու ձեռք կ'ունենան, երբ մարմնամարզ ընեն։ Մարմնամարզի չափ օգտակար է նաև վազելով ցատկելով՝ կանոնաւոր խաղեր խաղալ։

---

**17.** 1. Ի՞նչ կրնայ պատահիլ երբ կարդալու կամ գրելու ատեն գէշ դիրքով նստելու վարժուինք. 2. Ի՞նչ դիրք բռնելու է քալելու ատեն. — **18.** 1. Ի՞նչ օգուտ ունի մարզանքը. 2. Տղաքը մարզանքի պէտք ունի՞ն։ — **19.** Ի՞նչ է մարմնամարզը.

---

## 7. — ԸՆԴՀԱՆՈՒՐ ԱՌՈՂՋԱՊԱՀՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ ԿԱՆՈՆՆԵՐ

**20. Խմելու աղէկ ջուր.** — 1. Երբ մէկը գացած է դաշտը պտըտելու, կամ երբ ճամբորդութիւն մը կ'ընէ ու ծարաւ է, պէտք չէ հանդիպած ամէն ջուր խմէ։ Ճահիճներու եւ աղտոտ գետերու ջրերը վնասակար են։ Անձրեւի ջուրն ալ շատ աղէկ չէ եւ շատ անգամ կրնայ հիւանդութիւն պատճառել։

2. Ամէնէն աղէկը աղբիւրի ջուրն է, որ հողին ծոցէն դուրս կը բխի։ Իրաւ է որ շատ անգամ ջրհորներ ալ աղէկ ջուր կ'ունենան, բայց շատ ջրհորներու ջուրն ալ լեղի է։ Ասկէ զատ նոյն իսկ աղէկ ջուր ունեցող ջրհորներու մօտ պէտք է որ կենդանիներու աղբ եւ ուրիշ աղտեղութիւններ չգտնուին։

**21. Տունը աղէկ վիճակի մէջ պահել.** — Տանը ներսը խիստ աղէկ վիճակի մէջ պահելու է. առողջապահութեան համար շատ կարեւոր է աս։ Շատ անգամ մարդ հիւանդ կ'ըլլայ, երբ իր բնակած սենեակը աղտոտ է։ Պէտք է շատ անգամ ամբողջ տունը

*աւլել, փայտէ մասերը լուալ, պատերը չփել եւ փոշիները դուրս հանել:*

**22. Մարմինը խնամել.** — *Մարմնի մաքրութիւնը խիստ շատ կարեւոր է և շատ մը հիւանդութիւններու առջեւը կ'առնէ: Պէտք է ամէն առաւօտ առատ ջրով լուալ ձեռքերը, երեսները եւ ամբողջ գլուխը, և շատ անգամ ալ պաղ պաղ ջրով՝ ամբողջ մարմինը: Հագուստները խիստ մաքուր պահելու է եւ ճերմակեղէնները յաճախ փոխելու է:*

*Պէտք է զգոյշ ըլլալ եւ շատ տաք տեղէ մը շատ ցուրտ տեղ չանցնիլ մի եւ նոյն հագուստներով: Մանաւանդ երբ մէկը քրտընած է, պէտք է վերարկու մը առնէ վրան կամ հովի առջեւ չնստի:*

**20.** 1. Ճահիճներու եւ աղտոտ գետերու ջուրը խմել աղէ՞կ է. 2. Ո՞րն է է՛ն աղէկ ջուրը. — **21.** Տանը ներսի կողմը ի՞նչպէս պահելու է. — **22.** Ի՞նչպէս խնամելու է մարմինն ու հագուստները՝ առողջապահութեան համաձայն ըլլալու համար:

## 8. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ ԵՐԿՐՈՐԴ ԱՄՍՈՒԱՆ [1—7]

**Զգայականութիւն եւ շարժում. (1—3).** — **Ջի**ղերը *զգալու եւ շարժում առաջ բերելու համար են: Ջիղերու ամենամեծ մասը կուգան* ողնուղեղին *մէջ իրարու կը միանան: Ողնուղեղը երկար շուանի մը պէս ծուծ մըն է ողնայարին մէջ: Ողնուղեղին վերի կողմը գանկին մէջ կը գտնուի* ուղեղը*: Ջիղերը իրենց բոլոր զգացածները ուղեղին կ'իմացընեն, ուղեղն ալ հրաման կ'ընէ ջիղերուն և շարժում առաջ կը բերէ:*

**Հինգ զգայարանները. (4—10).** — *Հինգ զգայարանները ասոնք են*, տեսողութիւն, լսողութիւն, հոտառութիւն, ճաշակելիք, շօշափելիք:

**Աչքը** *տեսողութեան գործարանն է, պզտիկ գընտակիկ մըն է որ, եթէ առջեւի կողմէն դիտես, կ'երեւի*

ճերմկուցը որուն մէջ տեղն է գոյնզգոյն ծիածանը եւ ասոր ալ կեդրոնը՝ բիբը։ Լոյսը բիբին միջոցաւ աչքին ներսը կը մտնէ եւ տեսողական ջիղին վրայ տպաւորութիւն կ'ընէ։

Ականջը լսողութեան գործարանն է։ Դրսէն ականջի բաւիղը կ'երեւի, որուն մէջտեղէն ականջին արտաքին խողովակը ձայները ներս կ'ընդունի։ Թմբուկը կայ որ կը թրթռայ եւ ձայնը կ'իմացընէ լսողական ջիղին որ ուղեղին կը տանի զայն։

Քիթը հոտառութեան գործարանն է, իսկ լեզուն ճաշակելիքին։ Մորթը ամբողջովին շօշափելու կը ծառայէ, բայց շօշափելիքի բուն գործարանը մատներու ծայրերն են։

**Առողջ ապրելու համար կանոններ.** (11—22). — Մարդ մը իր առողջութիւնը աղէկ պահելու համար հետեւեալ կանոնները անպատճառ միտքը պահելու է։

Բնաւ չխմել ո՛չ օղի, ո՛չ գինի, ո՛չ ալ որ եւ է ոգելից ըմպելի. չափաւոր ուտել, արագ արագ չուտել, կամաց կամաց ծամել։ Կերակուրէ անմիջապէս յետոյ լոգանք չընել։ Ակռաներուն շատ խնամք տանիլ։ մինակ աղէկ ու մաքուր ջուր խմել։

Սենեակին օդը միշտ նորոգելու է՝ պատուհանները միշտ բանալով։ Վառարանը պէտք է ծուխը աղէկ քաշէ։ Տունը շատ մաքուր պահելու է։

Գրելու կարդալու ատեն ուղիղ դիրքի մէջ մնալ. քալելու ժամանակ ալ մէջքն ու գլուխը ուղիղ բռնել։ Խաղալ, վազվզել՝ չափաւոր կերպով եւ մարմնամարզ ընել։ Առատ ջրով լուացուելու է, ճերմակեղէնները շուտ շուտ փոխելու է։ Քրտնած ատեն հովի դէմ մնալու չէ եւ ուսերուն վրայ բան մը առնելու է։



# ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒ

---

## 1. ԴԱՍ. — ԱՆՈՒՆ ԿԱՄ ԳՈՅԱԿԱՆ

**1. Անուն կամ Գոյական.** — Մշակ, ձի, կաղամար, Մեսրոպ, Տիգրիս, Վրացի, Ուրալ, Դաւրէժ *բառերը կը ցուցընեն անձ, կենդանի, առարկայ։*

*Աս բառերը, որ* գոյութիւն *ունեցող բան մը կը ցուցընեն, կ'ըսուին* գոյական *կամ* անուն։

1. Հրահանգ. — Հետեւեալ բառերը գոյականներ են։ Որոշեցէք թէ ո՞րը անձ կը ցուցնէ, ո՞րը կենդանի եւ ո՞րը առարկայ։

*Որսորդ, Թռչուն, փետուր, Նաւաստի, տնտես, դերձան, ծիծառ, բորեան, գառնուկ, բամպակ, սոխ, լուսարար, ծխախոտ, մուկ, գինուոր, հովիւ, մանիշակ. լու, մլուկ, գլուկ* (լեպլեպի)*, փեսայ, մատնի, խոզ, խանութպան, չերամ, աճպարար, քարիւղ։*

2. Հրահանգ. — Հետեւեալ սահմաններուն համեմատ գոյականներ գտէք։

*Ի՞նչ կը կոչուի այն* մարդը *որ ձուկ կ'որսայ, որ հիւանդ կը բժշկէ, որ նաւ մը կը վարէ, որ դաս կուտայ, որ միս կը վաճառէ, որ պատ կը հիւսէ, որ մանուկները կը վարժէ, որ սայլ կը վարէ։*

*Ի՞նչ կը կոչուի այն* կենդանին *որ հաւկիթ կ'ածէ, որ հօտը կը պահպանէ, որ կառք կը քաշէ, որ արօր կը քաշէ, որ կռնակին վրայ կուտկէն ունի, որ կը զռայ, որ կը մայէ, որ կը մլաւէ, որ կը մռնչէ, որ կը բզզայ։*

*Ի՞նչ կը կոչուի այն* առարկան *որով գիր կը գրեն, որով հաց կը կտրեն, որով փայտ կը տաշեն, որով պատ կը ծեփեն, որով բան մը կշռեն, որով մազ կը սանտրեն, որով կար կը կարեն, որով քար կը տաշեն.*

---

**Հարցումներ.** — 1. Ի՞նչ է անունը։ — Ինչո՞ւ գոյական ալ կ'ըսուի։ [Գոյութիւն կը նշանակէ ըլլալ. Գտէք գոյ արմատով շինուած բառերը].

---

## 2. ԴԱՍ. — ԱՆՈՒՆՆԵՐՈՒՆ ՏԵՍԱԿԸ

**2. Հասարակ անուն.** — **Խաչնարած** *կամ* **հովիւ** *բառը կը ներկայացընէ այն անձը որ ոչխար կ'արածէ։* **Ձի** *բառը միեւնոյն տեսակէ ամէն կենդանիներուն ալ կ'ըսուի։* **Կաղամար** *կ'ըսուի ամէն առարկայի որուն մէջ մելան կը լեցրնեն՝ գիր գրելու համար։*

*Այս* **հովիւ, ձի, կաղամար** *բառերը* **հասարակ անուն** *են.*

*Ուրեմն* **հասարակ անուն** *է ամէն գոյական որ միեւնոյն տեսակէ ամէն անձի և առարկայի կրնայ ըսուիլ։*

**3. Յատուկ անուն.** — **Թորոս** *բառը մէկ անձ միայն կը նշանակէ,* **Միսիսիբի** *մէկ գետի մը անունն է։* **Հնդիկ** *բառը կը պատշաճի մէկ ազգի կամ ժողովուրդի։* **Պոնտոս** *կամ* **ճանիկ** *մէկ գաւառի յատուկ անունն է և ամէն գաւառի չի պատշաճիր, ամէն լեռի* **Ուրալ** *չ'ըսուիր, այլ այսինչ լեռի յատուկ անուն մ'է։*

*Արդ՝ Թորոս, Միսիսիբի, Հնդիկ, Պոնտոս, Ուրալ* **յատուկ անուններ** *են։*

**Յատուկ անուն** *են այն գոյականները որ* **միայն** *անձի մը,* **միակ** *առարկայի մը կը պատշաճին. կամ միեւ-*

նոյն տեսակէ որոշ խումբի մը էակները կամ իրերը կը ցուցընեն ։

Յատուկ անունները գլխագրով կը սկսին ։

3. Հրահանգ. — Հետեւեալ բառերը գոյական են ։ Անոնց մէջէն ո՞րը հասարակ անուն է և ո՞րը յատուկ անուն ՚ որոշեցէք բերանացի և գրաւոր ։

Ձի, ոչխար, Սողոմոն, Բարիզ, աթոռ, կաղնի, կէտ, կաւիճ, մահիճ, դահիճ, եղնիկ, Եղնիկ, Կովկաս, Նեղոս, բուրգ, բուրդ, գիծ, ծիծ, բիծ, Զաքէոս, Յովսէփ, Ալպեան, Սինա, Օսմանցի ։

4. Հրահանգ, — Գրեցէք մարդուս ներքին գործարաններուն անունները ։

5. Հրահանգ. — Գրեցէք արհեստաւորներու անուններ (10 հատ) ։

6. Հրահանգ. — Գրեցէք ձեր ընկերներուն անունն ու մականունը ։

Հարցումներ. — 2. Ո՞ր բառերը հասարակ անուն են. — 3. Ո՞ր բառերը յատուկ անուն են. Երկու տեսակէն ալ օրինակներ տուէք.

3. ԴԱՍ. — ՆԻՒԹԱԿԱՆ ԱՆՈՒՆ, ՎԵՐԱՑԱԿԱՆ ԱՆՈՒՆ

4. Նիւթական անուն. — Երբ պարտիզպան, ճպուռ, շաքար անունները գրուցեմ, միտքս կուգայ մարդ մը, միջատ մը, առարկայ մը զորոնք կրնամ աչքով տեսնել, ձեռքով շօշափել, ինչու որ նիւթական բաներ են։

5. Վերացական անուն. — Բայց երբ ըսեմ սէր, խիղճ, ջանք, վախ, եռանդ, երդում, աղքատութիւն, հոգի, պատիւ, այս բառերն ալ անուն են, բայց անոնց նշանակած բաները չեմ կրնար տեսնել, չեմ կրնար շօշափել. միայն մտքով կ'ըմբռնեմ, կը զգամ.

*ինչու որ նիւթական առարկաներ կամ էակներ չեն, այլ վերացական, աննիւթական, մտաւոր բաներ են:*

**6.** — *Վերացական անունները ընդհանրապէս* **ում, ութիւն և ոյթ** *կը վերջաւորին:*

7. Հրահանգ. — Երկու սիւնակի մէջ զատ զատ գրեցէք նիւթական անունները եւ վերացական անունները:

*Աստուած, հաճութիւն, տղայ, կրակ, ածուխ, արեւ, ծով, հոգի, աշխատութիւն, բարիք, կաքաւ, միտք, ծաղիկ, օձ, եռանդ, զգացում, հանք, ջանք, խոտ, էրիկ, կնիկ, քաղաք, փափաք:*

8. Հրահանգ. — *Սա* վերացական *անունները* նիւթականի *փոխեցէք՝* ութիւն, ում *կամ* ոյթ *մասնիկները ջնջելով.*

*Երեկոյթ. բնութիւն. թաղում, ծերութիւն. ընկերութիւն. նաւապետութիւն, կօշկարութիւն, հասոյթ, բնոյթ. տէրութիւն, հայրութիւն, արքայութիւն, իշխանութիւն, սուլում, խնդում, մեռելութիւն, կնութիւն, քերականութիւն, դրացութիւն:*

---

Հարցումներ. — **4.** Ի՞նչ կը ցուցընէ նիւթական անունը: — **5.** Ի՞նչ կը ցուցնէ վերացական անունը: — **6.** Ի՞նչ մասնիկով կը վերջաւորին վերացական անունները:

---

## 4. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ 1—3 ԴԱՍԵՐՈՒ

**7. Անուն.** — *Անունը բառ մ՚է որ անձ, կենդանի եւ առարկայ կը ցուցընէ:*

**8. Հասարակ անուն.** — *Հասարակ անուն են այն գոյականները որ մի եւ նոյն տեսակէ՝ ամէն էակներու և իրերու կը յարմարին:*

**9. Յատուկ անուն.** — *Մէկ անձի, մէկ առարկայի՝ կամ մէկ տեսակէ եղող անձերու եւ իրերու անունը յատուկ անուն կ'ըսուի։*

*Այսպէս են մարդ, քաղաք, գեղ, թաղ, փողոց, գետ, ծով, երկիր, լիճ, լեռ, եւայլն ցուցընող անունները.*

**10. Նիւթական անուն.** — *Այն անունները որ տեսանելի, շօշափելի էակներ կամ իրեր կը ցուցընեն, նիւթական անուն են։*

**11. Վերացական անուն.** — *Այն անունները որ շօշափելի բան մը չեն յայտներ, այլ միտքով կ'ըմբռնուին՝ վերացական անուն են։ Այսպէս են* ութիւն, ում, ոյք *վերջաւորող անունները։*

---

## 5. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

9. — *Գրեցէք* 12 *առարկաներուն անունը։*

10. — *Գրեցէք հինգ անուն քաղաքի։ Գրեցէք հինգ անուն անձի, հինգ անուն կենդանիի եւ հինգ անուն առարկայի։*

11. — *Գրեցէք հինգ անուն երկրի կամ պետութեան։ Հինգ անուն ծառի, և հինգ անուն ուտելիքի։*

12. — *Կէտերուն տեղ դրէք* յատուկ *անուններ։*

1.... *Օսմանեան պետութեան մայրաքաղաքն է։* — 2. ... *մարգարէն սաղմոսներ գրեց։* — 3. ... *ի նեղուցը կը զատէ Պոլսոյ եւրոպական և ասիական ցամաքները։* — 4. ... *Օսմ. առաջին թագաւորն է։* — 5. ... *Գողիաթն սպաննեց։* — 6. ... *ամիրա հիմնեց Ազգ. Հիւանդանոցը։* — 7. ... *հնարեց Հայերէն տառերը։* — 8. ... *գտաւ Ամերիկան։* — 9.

... սպաննեց իր եղբայրը՝ Աբէլ. — 10. ... եղաւ առաջին մարտիրոս։ — 11. ... գտաւ տպագրութիւնը։ — 12. ... աշխարհի հինգ մասերէն մէկն է։ — 13. ... աշխարհի ամենէն բարձր լեռն է։ — 14. ... դրախտէն վռնտեց ... ու ... ։

13. Հրահանգ. — Սա նիւթական անունները վերացական ըրէք՝ ուրիշ մասնիկով։

*Լրագիր, գրագիր, հեղինակ, մատենագիր, գիր, եղբայր, հովիւ, տուն, շուն, բարեկամ, հայր, կայսր, դուքս, գեղացի, քուրմ, վարդապետ, ժամկոչ, աշակերտ, զինուոր։*

14. Հրահանգ. — Որոշեցէք հասարակ և յատուկ անունները։

*Յովնան մարգարէ, Սահակ կաթողիկոս, Պետրոս առաքեալ, Ռէմլէ քաղաք, Ուրմիայի լիճ, Պալքան լեռներ, Անգղիայի կղզիներ, Կասպից ծով, Թուրքիայի ժողովուրդը, Պարսկաստանի սահմանները։*

15. Հրահանգ. — Նոյն բառերը մէյմէկ խօսքի մէջ գործածեցէք։

Օրինակ. — Կասպից ծովը կը տարածուի Ռուսաստանի, Պարսկաստանի եւ Թուրքաստանի միջեւ։

---

## 6. ԴԱՍ. — ԲԱՅԻՆ ՏԷՐԸ

**12. Բային տէրը՝ անուն.** — 1. Երբ կ'ըսեմ **Ձին կը վազէ**, *ասով գաղափար մը կը յայտնեմ։* **Ձին** *գործ մը կը կատարէ։* **Ձի** *բառը, որ այդ գործը կատարող կենդանին կը ցուցնէ,* **բային տէրն** *է։*

2. *Այս խօսքին մէջ* **բային տէր** *եղող բառը անուն մ'է։*

**13. Բային տէրը՝ դերանուն.** — *Երբ կ'ըսեմ՝* դուն դաս կը սորվիս, *նորէն գաղափար մը կը յայտնեմ։*

Դուն *բառը, որ դերանուն է, կը ներկայացընէ սերտելու գործողութիւնը կատարող անձը որուն կ'ուղղեմ խօսքս։* Դուն *բառը բային տէրն է։*

*Ուրեմն* բայի տէր *կրնան ըլլալ* անունը *եւ* դերանունը։

**Ծանօթ.** — *Դերանուն են* ես, դուն, ան, ինք, մենք, դուք, անոնք, իրենք *բառերը։*

16. Հրահանգ. — *Սա խօսքերը օրինակեցէք եւ* բայերուն *տակը մէկ գիծ քաշեցէք,* տէր *բայիներուն տակը երկու գիծ։*

1. *Ատաղձագործը տախտակ կը յղկէ։* — 2. *Ցրուիչները նամակ կը ցրուեն։* — 3. *Հասկերը կը փայլին։* — 4. *Օդը տաք է։* — 5. *Մայրը կը յանդիմանէ անհնազանդ տղան։* — *Գայլը ոչխար կ'ուտէ։* — 7. *Յակոբը վարպետ արհեստաւոր է։* — 8. *Դուն խելացի տղայ ես։* — 9. *Ես իրաւունք չունի՞մ։* — 10. *Ան թող երգէ, դուն ալ ձայնակցէ։* — 11. *Միթէ մենք ձեր ընկերը չե՞նք։* — 12. *Յիսուս ըսաւ «Դուք ամէնքդ ալ եղբայր էք»։* — 13. *Ինք զիս տեսաւ, ես ալ բարեւեցի։* — 14. *Հովը կը սուլէ։*

17. Հրահանգ. — Սա խօսքերը ամբողջացուցէք գոյական տէր բայիներ դնելով,

..... *կը մռնչէ,* ...... *կը զռայ,* ...... *կը պոռչայ,* ...... *կը բառաչէ,* ...... *կը մայէ,* ...... *կր հաչէ*........, ........ *կը մլաւէ,* ........ *կը կռկռայ,* ...... *կը ճլուըլայ.* ...... *կը թնձկայ,* ...... *կ'ոռնայ,* .... *կը մռնչէ,* ...... *կը սուլէ,* ..... *կը բզզայ,* ...... *կը ճռճռայ։*

( *Տես* Լրացուցիչ Քերականութ. *տիպ* 1896, *էջ* ԽԸ.)։

**Հարցումներ.** — **12.** Ինչ կ'ըսուի այն բառը որ անձ, կենդանի եւ իր կը նշանակէ եւ բային նշանակած գործը կը կատարէ. — **13.** Ո՞ր բառեր կրնան տէր բայի ըլլալ. — Ա-նունին դերը կատարող բառը ի՞նչ կ'ըսուի։ — . Որո՞նք են դերանունները։

---

## 7. ԴԱՍ. — ԲԱՅԻՆ ԼՐԱՑՈՒՑԻՉԸ ԿԱՄ ԽՆԴԻՐԸ

**14. Բային խնդիրները.** — Երկրագործը ցորեն կը ցանէ արտին մէջ։

*Այս խօսքին մէջ բային տէրն է* երկրագործը, *բայն է* կը ցանէ։

*Իսկ* ցորեն *և* արտին մէջ *բառերն ալ, որոնք խօսքը կ'ամբողջացընեն, կը կոչուին բային* խնդիրները *կամ* լրացուցիչները։

*Ի՞նչ կը ցանէ.* — Ցորեն։ *Այդ* ցորեն *բառը, որ* ի՞նչ *հարցման պատասխանն է,* կը ցանէ *բային* խնդիրն *է։*

*Երկրագործը ցորեն կը ցանէ՝ ո՞ւր.* — Արտին մէջ

*Աս* արտին մէջ *բառն ալ ցանել բային* խնդիր *է։*

*Յովսէփ* Եգիպտոսն *ազատեց* սովէն։

*Գիտենք արդէն որ* Յովսէփ *(անունը) տէր բային է, եւ* ազատեց *բայ է։*

*Յովսէփ ազատեց ի՞նչը։* — Եգիպտոսը։

*Յովսէփ Եգիպտոսն ազատեց ինչէ՞ն։* — Սովէն։

*Արդ՝* Եգիպտոս *և* սովէն *բառերն ալ ազատեց բային խնդիրներն են։*

Հրահանգ 18. — *Սա խօսքերուն մէջ բայերը շեղագիր գրուած են։ Տէր բայիններուն տակէն մէկ գիծ և խնդիրներուն տակէն երկու գիծ քաշեցէք։*

1. *Ոչխարները* կ'արածին *դաշտին մէջ։* — 2. *Շուները անոնց մօտ* կը հսկեն։ — 3. *Հովիւն ալ*

որինգ կ'ածէ։ — 4. Գայլերը չեն կրնար մօտենալ հօտին։ — 5. Եթէ ուզեն ոչխարներէն մէկը յափշտակել, շունը կը հաչէ բարձր ձայնով։ — 6. Հովիւը անտառէն կը ցատկէ։ — 7. Ծօկանը ձեռք կ'առնէ։ — 8. Կը յարձակի գայլին վրայ։ — 9. Ես տեսած եմ խաշնարածներ որ գայլերու հետ կռուած են և իրենց ոչխարներն անոնց բերնէն խլած են։ — 10. Շունը կ'օգնէ հովիւին, ան ալ գայլին վրայ կը վազէ. անոր վիզը կը խածնէ և թող չի տար որ հօտին վնաս հասցնէ։

19. Հրահանգ. — Օրինակին համեմատ խօսքեր շինեցէք։ — Օրինակ. — Արեւն ու լուսինը կը լուսաւորեն երկիրը։

Տէր բայի. — Արեւն ու լուսինը. — Ձին ու եզը. — Կովն ու այծը. — Հայրն ու մայրը. — Գետն ու առուն. — Սոխակն ու խայտիտը։

Բայ. — Կը դայլայլեն, կը սիրեն. կ'ոռոգեն, կը լուսաւորեն, կուտան, կը քալեն։

Խնդիր. — Արօրը, գեղեցիկ նուագներ,. իրենց զաւակները, երկիրը, պարտէզները, կաթը։

---

Հարցումներ. — 14. Բային իմաստը ամբողջացընող բառը ի՞նչ կը կոչուի։ — Քանի՞ տեսակ լրացուցիչ կայ։ — Ի՞նչ տարբերութիւն կայ տէր բայիին ու լրացուցիչին մէջ։

---

## 8. ԴԱՍ. — ՍԵՌԻ ԽՆԴԻՐ, ԲՆՈՒԹԵԱՆ ԽՆԴԻՐ

**15**. Սեռի խնդիր. — Մայրը կը սնուցանէ իր մանկիկը։ Աս խօսքին մէջ մանկիկը բառն է խնդիրը որ կը պատասխանէ զո՞վ (ի՞նչ) հարցումին։

Որսորդը թռչուն կ'որսայ։ Հոս ալ թռչուն բառն է

խնդիրը եւ կը պատասխանէ ի՞նչը հարցումին ։

Արդ, զո՞վ, ի՞նչը հարցումով գտնուող խնդիրները կը կոչուին Սեռի խնդիր ։

**19. Բնութեան խնդիր.** — 1. Վարժուհին տետրակ բաժնեց իր աշակերտներուն ։ — 2. Գինին կը շինուի խաղողէն ։ — 3. Խոտը կը քաղեն մանգաղով ։ — 4. Ծիծառնը բոյն կը շինէ տանիքներուն վրայ ։ — 5. Առիւծը կը բնակի անտառներուն մէջ ։

Շեղագիր բառերը (աշակերտներուն, խաղողէն, մանգաղով, տանիքներուն վրայ, անտառներուն մէջ) նոյնպէս խնդիրներ են որ կը լրացընեն իրենց քով գտնուող բայերուն իմաստը ։ Բայց այս խնդիրները գտնելու համար զո՞վ կամ ի՞նչը հարցումը չենք կրնար ընել ։

Պէտք է ըսենք. 1. Վարժուհին տետրակ բաժնեց. որո՞ւ — իր աշակերտներուն ։ — 2. Գինին կը շինուի. ինչէ՞ն. — խաղողէն ։ — 3. Խոտը ինչո՞վ կը քաղեն. — մանգաղով ։ — 4. Ծիծառը բոյն կը շինէ. — ո՞ւր, ո՞ր տեղը. — տանիքներուն վրայ ։ — 5. Առիւծը ո՞ւր կը բնակի. — անտառներուն մէջ ։

Այս տեսակ հարցումներուն պատասխանող բառը բնութեան խնդիր կը կոչուի ։

Բնութեան խնդիրը գտնելու համար, բային քով այս հարցումները ընելու է.

Որո՞ւ, որմէ՞, որո՞վ, ինչի՞, ինչէ՞, ինչո՞վ, ե՞րբ, ո՞ւր, եւայլն ։

20. Հրահանգ. — Կարդացէք հետեւեալ հատուածը, ետքը օրինակեցէք ձեր տետրակին մէջ՝ ստորագծելով միայն բնութեան խնդիրները ։

## ԱԶԳԱՅԻՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑ

*Յարութիւն ամիրա Պէզճեան որ ապրած է 19րդ դարու մէջ, առաքինի գործերով անմահացուցեր է իր անունը։ Իր նպաստով շատ եկեղեցիներ շինուեցան Պոլսոյ մէջ, գիրքեր նուիրուեցան դպրոցներու, հաստատուեցաւ մանաւանդ Ազգ. Հիւանդանոցը Եէտի Գուլէի դուրսը։ Այդ բարի գործը միշտ երախտագիտութեամբ կը յիշուի ազգէն եւ հիւանդանոցին մէջ պատսպարուող հիւանդներէն, ծերերէն, անկարներէն եւ որբերէն։ Հիմա ազգին դրամով կը մատակարարուի այդ հաստատութիւնը, եւ՝ Վեհափառ Սուլթանէն հովանաւորուած՝ օրական հացի ու մսի բաւականաչափ նպաստ կը ստանայ։ Երանի՛ կարդանք աղքատները սիրողներուն եւ անոնց օգնութեան հասնողներուն։*

**Հարցումներ. — 15.** — Լրացուցիչ կամ խնդիրը քանի՞ տեսակ է։ — Ի՞նչ հարցումով կը գտնուի սեռի խնդիրը։ — **16.** — Իսկ բնութեա՞ն խնդիրը։

---

### 9. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ 6, 7, 8 ԴԱՍԵՐՈՒՆ

**17. Տէր բայի.** — *Այն բառը, որ կը ցունէ գործողութիւնը կատարող կամ կրող անձը, կը կոչուի* **բային տէրը**։

**18. Դերանուն տէր բայի.** — **Ես, դուն, ան, ինք, մենք, դուք, անոնք, իրենք** *բառերը* **դերանուն** *են*։

*Բայի տէր կրնան ըլլալ Գոյականը եւ Դերանունը*։

**19. Լրացուցիչ կամ խնդիր.** — *Բայի մը խնդիր է այն բառը որ նոյն բային իմաստը կ'ամբողջացընէ*։

**20. Սեռի խնդիր.** — *Խօսքի մը մէջ* զո՞վ, ի՞նչը *հարցումներուն պատասխանող բառը* **սեռի** *խնդիր է*։

**21**. **Բնութեան խնդիր.** — Որո՞ւ, որմէ՞, որո՞վ, որո՞ւ համար, որո՞ւ հետ, *կամ* ի՞նչ բանի՞, ի՞նչ բանէ, ի՞նչ բանով, ինչի՞ համար, ինչի՞ հետ, ինչի՞ մէջ *ելն.* *Հարցումներուն պատասխանող բառը բնութեան խնդիր է։*

---

## 10. ԴԱՍ. —ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

21. Կարճ բառերով պատասխանեցէք սա հարցումներուն։

1. *Ձիւնը ի՞նչ կ'ըլլայ արեւին տակ։* — 2. *Ո՞ւր կ'աշխատին հանքագործները։* — 3. *Գարունը ի՞նչ կ'ընէ այգեգործը։* — 4. *Հովիւին շունը ի՞նչ օգուտ ունի։* — 5. *Գիշերապահները ե՞րբ կը հսկեն։* — 6. *Անձրեւին ջուրերը ո՞ւր կ'երթան։* — 7. *Ո՞ւր կը բուսնի ցորենը։* — 8. *Իսկ բաթաթէ՞սը։* — 9. *Ո՞ր աշակերտ հոգ կը տանի իր դասերուն։* — 10. *Այբուբենը ո՞ր գրքէն սորվեցար։* — 11. *Ինչի՞ մէջ կը լեցընեն գինին։* — 12. *Որո՞ւ ողորմութիւն տալու է։*

22. Սա խօսքերուն մէջ սեռի խնդիրներուն տակէն գիծ քաշեցէք։

1. *Հացագործը խմոր կը թրէ։* — 2. *Մուկը փայտ կը կրծէ։* — 3. *Վայրենին հիւղակ կը շինէ։* — *Ագարակապանը ցորեն կը ծախէ։* — 5. *Թագաւորը ազգեր կը կառավարէ։* — 6. *Ես քեզ շատ կը սիրեմ։*

23. Բնութեան խնդիրներուն տակ գիծ քաշեցէք։

1. *Գեղացին կարագ կը վաճառէ խանութպաններուն։* — 2. *Քրոջմէս նամակ առի։* — 3. *Բարեկամիդ համար գիրք մը գնէ։* — 4. *Ռուբէն իր եղբօրը հետ կը խաղայ։* — 5. *Մեր ծնողքէն պարգեւ ստացանք։* — 6. *Դրամով ամէն բան չի գնուիր։* — 7. *Թռչունը*

*կ'երգէ ծառերուն վրայ։* — 8. *Կայծոռիկը կը փայլի գիշեր ատեն։* — 9. *Ցորենը կը լեցընենք պարկերու մէջ և ջաղացպանին կը տանինք որ աղօրիքով մանրէ, ալիւր չինէ ցորենը։* — 10. *Մայրը կը գուրգուրայ իր զաւկին վրայ։*

---

## 11. ԴԱՍ. — ԵՐԵՔ ԴԷՄՔԵՐԸ

**22. Առաջին դէմք.** — Ես կ'երգեմ, ես կը խօսիմ, ես կը կարդամ *խօսքերուն մէջ* ես *բառը* առաջին դէմքի դերանուն է։

**23. Երկրորդ դէմք.** — Դուն *կ'երգես*, դուն *կը խօսիս ևայլն.* դուն *բառը* երկրորդ դէմքի *դերանուն է*։ Դուն *կը ներկայացնէ այն անձը որուն խօսք կ'ուղղենք*։

**24. Երրորդ դէմք.** — *Երբ Յակոբը յիշելով կ'ըսեմ.* ան *կ'երգէ*, Յակոբ *անունին տեղ կը գործածեմ* ան *բառը*, *որ* երրորդ դէմքի դերանուն է, *և կը ցուցընէ այն անձը որուն վրայ կը խօսիմ*։

24. Հրահանգ. — Սա խօսքերուն մէջ ո՞ր դերանունները Ա. դէմք կը ցուցընեն, որո՞նք Բ. դէմք եւ որո՞նք Գ. դէմք։

*Ես կը մեկնիմ։ Դուն չե՞ս կարդար։ Ա՞ն ով է։ Դո՛ւն ալ կեր։ Ան թող լռէ։ Դուն խօսէ, ես ձայն չեմ հաներ։ Ես կար կը կարեմ. ան լուացք պիտի ընէ։ Ես ու դուն եղբայր ենք։ Ան ու ես մէկ գիրք կը կարդանք։*

25. Հրահանգ. — Կէտերուն տեղ յարմար դերանուններ դրէք։

*...... կ'աղաչեմ։ ...... բարի տղայ է։ ...... որո՞ւ տղայ ես։ ...... ի՞նչ կ'ուտես։ ...... ո՞ր տեղացի է։......*

քու ընկերդ չե՞մ ։ ...... չե՞ս ուզեր խաղալ, ուրեմն ...... ալ չեմ խաղար ։

---

Հարցումներ, — 22. Ո՞րն է Ա. դէմքի դերանունը. — 23. Իսկ Բ. դէմքի դերանո՞ւնը. — 24. Ո՞ր դերանունը Գ. դէմք կը ցուցընէ. — Անունին տեղ ի՞նչ բառեր կը գործածուին իբրեւ բայի տէր ։

---

## 12. ԴԱՍ. — ԵՐԿՈՒ ԹԻՒԵՐԸ

**25. Բայը՝ եզակի. —** Ես, դուն, ան, ինք *բառերը կը ցուցընեն թէ իրենց քովի բայը* եզակի *է.*

**26. Բայը՝ յոգնակի. —** Մենք, դուք, անոնք, իրենք *բառերը կը ցուցընեն թէ իրենց քովի բայը* յոգնակի *է ։*

| Եզակի | Յոգնակի |
| --- | --- |
| Ես *կ'երգեմ* | Մենք *կ'երգենք* |
| Դուն *կը խօսիս* | Դուք *կը խօսիք* |
| Ան, ինք *կը կարդայ* | Անոնք, Իրենք *կը կարդան ։* |

**27. Բային թիւը. —** *Ասկէ կը հասկցուի թէ բայը կ'ըլլայ* եզակի *կամ* յոգնակի ։

26. Հրահանգ. — Սա եզակի *խօսքերը* յոգնակի ըրէք. [*Օրինակ.* Անոնք *մեծ մարդ* են ։]

Ան *մեծ մարդ է ։* — Դուն *շատ կ'աշխատիս ։* — Ինք *թող գայ ։* — Ես *« Նոր Դպրոց » կը կարդամ ։* — Ան *կը խօսի ։* — Դուն *շատ կը կռուիս ։* — Ես *աղէկ կ'երգեմ ։* — Ան *բարի մարդ է ։* — Դուն *անոր մի՛ նայիր ։*

27. Հրահանգ. — *Կարդացէք սա հատուածը, ետքը գրեցէք ձեր տետրակին մէջ՝ որոշելով բայերը մէկ գիծով ու տէր բայիները՝ երկու գիծով ։*

## *ՄՈՒԿԸ*

*Մոխրագոյն՝ փափուկ մորթով պատած է մուկը։ Սեւ աչքերը կը փայլին ու կը դիտեն ամէն կողմ։ Թաթերը շատ փափուկ են։ Շնորհալի կերպով կը ցատքոտէ։ Արթուն ու զգուշաւոր է։ Ան ի՛նչ սուր ակռաներ ունի։ Տղաքը պէտք չէ վստահին այս փոքրիկ, նուրբ ու սրածայր ակռաներուն։ Գտածը կ'ուտէ։ Մուկ չէ՞ մի։ Կաշին անգամ կը կրծէ։ Ես շատ անգամ տեսած եմ մարդիկ որ կ'ըսեն. Լեզուիս ծայրը կը կսկծէ. մկան կերուք եմ կերեր։ Իրաւ ալ այն պզտիկ կենդանին, որ հազիւ ձեռքիս չափ է, ամէն բանի կը դպչի. ամէն բան կը կրծէ. ամէն չարութիւն կ'ընէ մեր տուներուն մէջ։ Շտեմարանէն ցորեն կը կրէ, թուղթ կը պատռէ, եւայլն։ Վերջապէս մուկէն զգուշանալու ենք՝ դուն ալ, ես ալ, ամէնքս ալ։*

28. Հրահանգ. — *Նորէն գրեցէք նոյն հատուածը եւ եզակի բայերուն տակ մէկ գիծ քաշեցէք, յոգնակի բայերուն տակ երկու գիծ քաշեցէք։*

29. Հրահանգ. — *Կարդացէ՛ք նոյն հատուածն ու ըսէք թէ այդ բայերը ի՞նչ դէմքէ են։*

---

**Հարցումներ.** — **25.** Եզակի բայի մը քով ի՞նչ թիւ տէր բայի կը դրուի։ — Որո՞նք են եզակի դերանունները։ — **26.** Որո՞նք են յոգնակի դերանունները։ — **27.** Բային թիւը քանի՞ է։ — Եզակին ի՞նչ կը ցուցնէ։ — Իսկ յոգնակի՞ն։

---

### 13. ԴԱՍ. — ԱՆՈՒՆՆԵՐՈՒՆ ԹԻՒԸ

**28.** Մէկ անձ, մէկ կենդանի, մէկ իր. — *Երբ կ'ըսենք* մարդ *մը*, կատու *մը*, գիրք *մը*, *հոս* մարդ

*բառը մէկ անձ միայն կը ցուցընէ*, կատու *բառը մէկ կենդանի կը ցուցընէ*, գիրք *բառը մէկ առարկայ կը ցուցընէ*։

**29.** **Շատ անձեր, շատ կենդանիներ, շատ իրեր.** — *Բայց երբ ըսեմ* մարդեր, կատուներ, գիրքեր, *ան ատեն* մարդեր *գոյականը շատ մը անձեր կը ցուցընէ*, կատուներ *գոյականը շատ մը կենդանիներ և* գիրքեր *գոյականը շատ մը գիրքեր կը ցուցընէ*։

**30.** **Անուններուն թիւը.** — *Ուրեմն անուններն ալ* թիւ *ունին, այսինքն մէկ կամ շատ անձ, մէկ կամ շատ կենդանի, մէկ կամ շատ իր կը ցուցընեն*։

**31.** **Եզակի անուն.** — *Երբ գոյականը մէկ անձ, մէկ կենդանի, մէկ իր կը ցուցընէ՝ այն ատեն* եզակի *է*։ *Ինչպէս.* մէկ տուն, մէկ շուն, մէկ մոմ։

**32.** **Յոգնակի անուն.** — *Երբ անունը շատ անձ, շատ կենդանի, շատ առարկայ կը ցուցընէ, ան ատեն կ'ըսուի թէ* յոգնակի *անուն է*։

*Ինչպէս.* Հայրեր, սագեր, հացեր.
Աղջիկներ, ջորիներ, գաւաթներ.

30. Հրահանգ. — Զատ զատ սիւնակներու մէջ գրեցէք սա անունները։ Առաջին սիւնակին մէջ գրեցէք եզակի անունները, երկրորդին մէջ յոգնակի անունները։

*ժամ, պատ, գիրեր, աշտանակներ, թերթեր, վարդ, սարդ, զարդեր, թարթիչ, յոնքեր, ընկեր, բեռ, բառեր, չամիչ, տուն, շուներ, քոյրեր, ճամբայ, մատիտ, ներ, տէրեր, աներ, բաներ, վանք, հանքեր, թուփ, գործեր, ոստիկաններ*։

31. Հրահանգ. — Կարդացէք սա հատուածը։ Ետքը գրեցէք՝ եզակի անուններուն տակը մէկ գիծ եւ յոգնակի անուններուն տակ երկու գիծ քաշելով։

## ՍԵՐՄԸ

*Մեր բնակած երկրագունտը լեցուն է սերմերով զորոնք ցանած է Աստուծոյ արարչագործ ձեռքը։ Բոլոր անտառներ, բոլոր պտղատու ծառեր, գոյնզգոյն ծաղիկներ, կանաչ խոտեր և զանազան բանջարեղէն բոյսեր և ամէն բուսական բաներ, սերմի հատիկներէ առաջ եկած են։ Այս տեղ դուն փառք տուր Աստուծոյ, հոգիովդ համբուրէ՝ անոր նախախնամ ձեռքը որ՝ այս երկիրն իբրեւ ժառանգութիւն և իբրեւ անսպառ դրամագլուխ տալով մարդուն՝ ամէն տեսակ սերմերն ալ երկրին հետ պարգեւեց։ Եթէ առանց սերմի՝ չոր և անբոյս երկիր միայն տար, ի՞նչ կ'ըլլար մարդուն վիճակը։ Ա՛լ չէր կրնար ապրիլ մարդէակը, վասն զի մեր սնունդն ու մեր կեանքը երկրի սերմնաբոյսերն են։*

Գապիկ եւ Թոռնիկ, Է. Խ. Հ.

32. Հրահանգ. — Նոյն հատուածին մէջ ո՞ր բառերը սեռի խնդիր են, եւ ո՞րոնք բնութեան խնդիր։

---

**Հարցումներ.** — **28—32.** — Ի՞նչ *կ'ըսուի այն անունը որ մէկ անձ, մէկ կենդանի, մէկ առարկայ կը ցուցնէ։* — Իսկ *մէկէ աւելի ցուցնող անունը ի՞նչ Թիւ կ'ըսուի։*

---

### 14. ԴԱՍ. — ԱՆՈՒՆՆԵՐՈՒՆ ԹԻՒԸ

### ԱՆՈՒՆՆԵՐԸ Ի՞ՆՉՊԷՍ ՅՈԳՆԱԿԻ Կ'ԸԼԼԱՆ

**33. Անուններուն թիւը ի՞նչպէս կ'որոշուի.** — *Անունները եզակիի մէջ ուրիշ կերպ կը գրուին, յոգնակիի մէջ ալ ուրիշ կերպ։*

*Երբ կ'ըսեմ մէկ* եղբայր, *մէկ* հաւ, *մէկ* նաւ, եղբայր, հաւ, նաւ *եզակի են։ Աս է իրենց նախնական ու պարզ ձեւը։*

*Երբ յոգնակի ըլլան, ուրիշ կերպ կը գրուին. իրենց ձայնը* եր *կամ* ներ *կը կցուի, այսպէս.*

Եղբայրներ, հաւեր, նաւեր:

**34. Կանոն.** — *Անունները յոգնակի շինելու համար անոնց ձայնը* եր *կը կցենք (երբ միավանկ են),*
ներ » » *(երբ բազմավանկ են):*

32. Հրահանգ. — Սա միավանկ եզակի բառերուն ձայնը ԵՐ մասնիկը կցելով յոգնակի ըրէք:

*Հայր, մայր, քոյր, մամ, պապ, հաւ, հաց, ջուր, լոյս, աչք, քիթ, վիզ, մատ, մազ, մաս, դաս, փայտ, պայտ, կաթ, վարդ:*

33. Հրահանգ. — Սա բազմավանկ եզակի բառերուն ձայնը ՆԵՐ աւելցնելով յոգնակի ըրէք:

*Եղբայր, զաւակ, աղջիկ, հանի, ընկեր, դրացի, վարժապետ, վարդապետ, աշակերտ, վարժուհի, դպրոց, փողոց, պարտէզ, ծաղիկ, խաղող, գինի, կոնակ, կոճակ, դերձան, հագուստ, անձրեւ:*

---

## 15. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ 11–14 ԴԱՍԵՐՈՒ

**35—37. Բայերուն երեք դէմքերը.** — Առաջին դէմքն է *խօսողը, որուն տեղ կը գործածուի* ես, մենք *դերանունները:*

Երկրորդ դէմքն է *այն անձը որուն կ'ուղղենք մեր խօսքը և կը գործածենք* դուն, դուք *դերանունները:*

Երրորդ դէմքն է *այն անձը որուն վրայ կը խօսինք, ըսելով՝* ան, ինք, անոնք, իրենք:

**38. Բայը՝ եզակի թիւով.** — *Երբ գործողութիւնը կատարողը մէկ անձ կամ իր է, բայը կը գրուի եզակի. այն ատեն տէրբային կ'ըլլայ* ես, դուն, ան, ինք *կամ (Գ. դէմքի համար) գոյական մը:*

**39. Բայը՝ յոգնակի թիւով.** — Երբ շատ մը անձեր շատ մը իրեր կը կատարեն գործը, այն ատեն բայը կը դրուի յոգնակի, և տէր բայի կ'ըլլան մենք, դուք, անոնք, իրենք դերանունները կամ (Գ. դէմքի համար) մէկէ աւելի անուններ։

**40. Բայերուն թիւը.** — Բայերը կը գործածուին եզակի կամ յոգնակի թիւով։

**41—45.** — Անուններն ալ ունին եզակի և յոգնակի։ Մէկ հատ, մէկ իր ցուցընող անունները եզակի են, իսկ երբ շատ անձ, շատ կենդանի, շատ առարկայ կը ցուցընեն, յոգնակի են։

**46. Անուններու յոգնակի ընելու կանոն.** — Եզակի անուն մը յոգնակի ընելու համար ծայրը եր կամ ներ աւելցընելու է։

Միավանկ անունները եր մասնիկով, իսկ բազմավանկ անունները ներ մասնիկով յոգնակի կ'ըլլան։

---

## 16. ԴԱՍ. — ԲԱՅԻՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԸ

**47. Ներկայ.** — Երբ կ'ըսեմ կը կարդամ, կը հասկցուի թէ կարդալու գործը հիմա կ'ընեմ, հիմա կը կարդամ։ Ասիկա է բային ներկայ ժամանակը։

**48. Անցեալ.** — Երբ կ'ըսեմ երէկ կը կարդայի, երէկ կարդացի, կը հասկցուի թէ անցած ժամանակի մէջ կարդացած եմ։ Աս ալ բային անցեալ ժամանակն է։

**49. Ապառնի.** — Եւ երբ կ'ըսեմ, վաղը պիտի կարդամ, կը հասկցուի թէ կարդալու գործը վաղը պիտի ընեմ, այսինքն գալիք ժամանակ մը։

Այս ժամանակն ալ կը կոչուի ապառնի։

**50. Ժամանակ.** — Ըսել է, բային ժամանակը ցոյց կուտայ թէ գործ մը հիմա կ'ըլլայ, կամ երէկ եղաւ կամ վերջը՝ վաղը պիտի ըլլայ,

Ներկայ *ժամանակ ըսելով կը հասկցուի թէ գործը այս վայրկեանիս կատարուելու վրայ է ։*

Անցած *ժամանակը ցոյց կուտայ թէ գործը կատարուած լմնցած է ։*

Ապառնի *ժամանակը կը ցուցընէ թէ գործը այս վայրկեանէն ետքը պիտի կատարուի ։*

*Բայը կրնայ գործածուիլ* ներկայ, անցեալ և ապառնի *ժամանակով ։*

34. Հրահանգ. — Սա խօսքերէն օրինակներ եւ որոշեցէք թէ ո՛ր բայերը ներկայ ժամանակ կը ցուցընեն,
ո՛ր » անցած » »
եւ ո՛ր » ապառնի » »

*Բարեկամս վաղը պիտի գայ ։ — Հիմա կ'աշխատիմ, վաղը հանգիստ պիտի ընեմ ։ — Երէկ ճամբայ ելաւ ։ — Ութ օր առաջ կատարեցինք մկրտութիւնը ։ — Գալ կիրակի ագարակ պիտի երթանք ։ — Հերու ալ գացինք ։ — Այս տղան իրաւ խելօք կը կենայ ։ — Տնտեսը ջուր չի բերեր ։ — Ծարաւ ենք ։ — Դուն ալ ջուր մը չպիտի՞ խմես ։ — Այո՛, կը խմէի, բայց հիմա քրտնած եմ. քիչ մը վերջը պիտի խմեմ ։*

Հարցումներ. — 47. Ո՞րն է այն ժամանակը որ կը ցուցընէ թէ գործը կը կատարուի խօսուած պահուն. — 48. Խսկ առջէն կատարուած գործ մը ցուցընող ժամանակի՞ն ինչ կ'ըսուի ։ — 49. Վերջը կատարուելիք գործը ցուցընող ժամանա՞կը որն է ։ — 50. Որո՞նք են բային երեք ժամանակները ։

---

## 17. ԴԱՍ. — ԲԱՑԻՆ ԵՂԱՆԱԿՆԵՐԸ

**51.** Եղանակ. — *Բային ցուցուցած գործը այլ եւ այլ ձեւերով կրնայ բացատրուիլ ։*

*Այս այլ եւ այլ ձեւերը կը կոչուին* եղանակ ։

**52.** Սահմանական եղանակ. — *Երբ ըսեմ* Սիմոն

դաս կը սորվի, *կը հաստատեմ, կը ճշդեմ, կը սահմանեմ թէ գործը կատարողն է Սիմոն։ Այս տեղ* կը սորվի *բայը* սահմանական եղանակ է։

**53**. **Հրամայական եղանակ**. —*Երբ Սիմոնին ըսեմ.* դասդ կարդա՛, *կը հրամայեմ գործ մը կատարել։ Ան ատեն* կարդա՛ *բայը* հրամայական եղանակ է։

**54**. **Ստորադասական եղանակ**. — Կ'ուզեմ որ Սիմոնն դաս սորվի։ *Այս խօսքին մէջ* սորվի *բայը* կ'ուզեմ *բային կապուած է, անկէ կախում ունի եւ անոր ստորադաս եղած է։ Հոս ալ* սորվի *բայն* ստորադասական եղանակ է։

**55**. **Աներեւոյթ եղանակ**. — Դաս սորվիլը օգտակար է Սիմոնին։ *Աս խօսքին մէջ* սորվիլ *բայը ընդհանուր եւ անորոշ կերպով կը բացատրէ գործ մը, որուն ժամանակն յայտնի չէ։ Աս տեղ ալ* սորվիլ *բայը* աներեւոյթ եղանակ է։

**56**. **Ընդունելութիւն կամ Դերբայ**. — *Վերջապէս երբ կ'ըսեմ,* Սիմոնին սորված դասը, *Դաս բառին յատկութիւնը, ինչպէս ըլլալը կը յայտնեմ* սորված *բայով։ Աս բայն ալ* ընդունելութիւն *կամ* դերբայ *է։*

35. Հրահանգ. — Ի՞նչ եղանակ են բայերը սա խօսքերուն մէջ։

*Ես դաս պիտի սորվիմ։ — Չեմ ուզեր որ ժամանակդ պարապ անցընես։ — Կարդա՛, տղա՛ս, կարդա՛ որ մարդ ըլլաս։ — Ապրիլն անհրաժեշտ չէ, բայց աշխատիլն անհրաժեշտ է։ — Մարդս պէտք է ճամբորդած ըլլայ. ան ատեն է որ շատ բան կը սորվի։ — Առածը կ'ըսէ. «Շատ ապրողը չգիտէ, շատ ճամբորդողը գիտէ»։ — Յիսուս ծնաւ Հրէաստանի մէջ։ — Սիմո՛ն, դաս պիտի սորվի՞ս։*

**36. Հրահանգ**. — Երեքական խօսք շինեցէ՛ք 1.

Սահմանական եղանակէ բայով, 2. Ստորադասականով, 3. Հրամայականով։

Հարցումներ. — 51. — Ի՞նչ կը ցուցընէ բային եղանակը։ — Եղանակը քանի՞ է։ — Որո՞նք են։ — 52. — Ի՞նչ կը ցուցընէ սահմ. եղանակը. — 53. — Իսկ հրամայակա՞նը. — 54. — Ստորադասակա՞նը։ — 55. — Աներևու՞յթը։ — 56. — Ընդունելութի՞ւնը։

## 18. ԴԱՍ. — ԲԱՅԻՆ ԵՐԵՔ ԼԾՈՐԴՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## ԱՐՄԱՏ ԵՒ ՎԵՐՋԱՒՈՐՈՒԹԻՒՆ

**57. Բայը խոնարհել.** — *Բայի մը ամէն եղանակները, ժամանակները, դէմքերն ու թիւերը գրով կամ բերնուց ըսելը* բայը խոնարհել *կը կոչուի։*

**58. Առաջին լծորդութիւն.** — *Բային առաջին ձևը, որ* ել *կը վերջաւորի. Ա. լծորդութիւն է։*

**59. Երկրորդ լծորդութիւն.** — Իլ *վերջաւորող բայերը երկրորդ ձևի կամ լծորդութեան բայ են։*

**60. Երրորդ լծորդութիւն.** — *Այն բայերն ալ որոնց աներևոյթը* ալ *կը վերջաւորի, Գ. լծորդութեան բայ են։*

**61. Արմատ եւ վերջաւորութիւն.** — Երգել, երգեցի, երգած *բայերուն մէջ կայ* երգ *մասը որ ամենուն մէջ ալ նոյնն է։ Բային այս մասը կը կոչուի* **արմատ** *եւ անփոփոխ կը մնայ։*

*Իսկ* ել, եցի, ած *մասերը բային* վերջաւորութիւններ *են որ եղանակին, ժամանակին, թիւին, դէմքին համեմատ կը փոխուին։*

37. Հրահանգ. — Սա բայերը երեք սիւնակի մէջ զատ զատ գրեցէք որոշելով լծորդութիւնները։

*Մտածել, կարդալ, խորհիլ, տապկել, մնալ,*

*անցնիլ, գանիլ, խանիլ, թքնել, ապրիլ, գողնալ, դողալ, աղօթել, յուսալ, տանջել, տանջուիլ, փաթթել, պտտիլ. հազալ, փաթթուիլ, գոցել:*

---

## 19. ԴԱՍ. — ԱՄՓՈՓՈՒՄ 16, 17, 18 ԴԱՍԵՐՈՒ

**62. Ժամանակ.** (47—50)—*Ժամանակը ցոյց կուտայ թէ բային նշանակած գործը հիմա կը կատարուի, կամ արդէն կատարուած է եւ կամ ապագային պիտի կատարուի: Ուրեմն ժամանակը երեք է.* Ներկայ, անցեալ, ապառնի:

**63. Եղանակ.** (51—56)—*Ընել կամ ըլլալ ցուցընելու այլ եւ այլ ձեւերը կը կոչուին բայի* եղանակներ:

*Հինգ եղանակ կայ.*

Սահմանական *որ իրողութիւնը կը հաստատէ:*

Հրամայական *որ պատուէր, հրաման կը յայտնէ:*

Ստորադասական *որ կը ցուցընէ թէ գործ մը ուրիշ գործէ մը կախում ունի:*

Աներեւոյթ *որ ընդհանուր, անորոշ գործողութիւն մը կը յայտնէ:*

Ընդունելութիւն *որ անձերուն կամ իրերուն որպիսութիւնը կը ցուցընէ:*

**64. Բայը խոնարհել.** (57)—*Բայի մը ամէն եղանակները, ժամանակները, դէմքերն ու թիւերը կարգով զրուցել կամ գրելն է* խոնարհել:

**65. Երեք լծորդութիւն.** (58—60) — *Բայերը երեք ձեւով կը վերջաւորին, այսինքն երեք լծորդութիւն ունին. Ա. լծորդութեան բայերը* ել *կը վերջաւորին,*

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| *Բ.* | » | » | իլ | » | » |
| *Գ.* | » | » | ալ | » | » |

**66. Արմատ եւ վերջաւորութիւն** (61)—*Բային արմատը այն մասն է որ ամբողջ խոնարհումին մէջ անփոփոխ կը մնայ, իսկ վերջաւորութիւնը այն մասն է որ կը փոխուի եղանակին, ժամանակին, թիւին ու դէմքին հետ։*

---

## 20. ԴԱՍ. — ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

38. Հրահանգ. — Սա խօսքերուն մէջ բայերուն տակը գիծ քաշեցէք։ Ետքը ըսէք թէ ի՞նչ թիւ են (եզակի՞ թէ յոգնակի)։

1. *Ես կը ճաշեմ, դուն կը խօսիս։* — 2. *Ան կը պոռայ, մենք կը խնդանք։* — 3. *Հովիւը ոչխար կ՚արածէ։* — 4. *Կարելի՞ բան է որ ծնողքդ չսիրես։* — 5. *Գիւղ երթալու միտք ունի՞ք։* — 6. *Ուժէդ վեր բաներու կը ձեռնարկես։* — 7. *Կանչեցէք տեսնեմ՝ ի՞նչ կ՚ըսէ սա մարդը։*

39. Հրահանգ. — Ըսէ՛ք, ի՞նչ դէմքէ են նոյն բայերը։

40. Հետեւեալ բայերը օրինակեցէք՝ վերջաւորութիւնը արմատէն զատելով։

*Պարել, կը պարէ. պարած, պարեցին, կը պարե՞ս, պիտի պարե՞ս, կը պարենք, պարէ՛։*

*Նմանցուցի, նմանցընել, կը նմանի, նմանէինք, նմանեցաւ, նմանէ՛, նմանած, կը նմանիս, կը նմանէր, նմանի։*

41. Հրահանգ. — Որոշեցէք վերի բայերուն ժամանակն ու եղանակը։

ՎԵՐՋ Բ. ՊՐԱԿԻՆ

---